M. Darbinyan-Melik'yan, Թովմայի «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ի աղբյուրները և Արծրունի իշխանների ծագումնաբանության առասպելը [Sources for T'ovma's *History of the House of the Artsrunik'* and the Legend of the Origin of the Artsrunid Princes], from *Banber Matenadarani*, volume 17 (2006), pp. 15-51, in 38 pdf pages.

Մ. ԴԱՐԲԻՆՅԱՆ-ՄԵԼԻՔՅԱՆ

# ԹՈՎՄԱՅԻ «ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՆՆ ԱՐԾՐՈՒՆԵԱՑ»-Ի ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ԵՎ ԱՐԾՐՈՒՆԻ ԻՇԽԱՆՆԵՐԻ ԾԱԳՈՒՄՆԱԲԱՆՈՒԹՅԱՆ ԱՌԱՍՊԵԼԸ[1]

*Սկսելով «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ի շարադրանքը, Թովման առաջաբանում հետեւյալ կերպ է ներկայացրել իր առջեւ դրված խնդիրները՝ «...ներքադրեալ ի յիշատակարանս մատենից զնախնեացն քոց զազգաբանութիւն կարգաւ ածել, զԹիւսն ըստ ծննդոց խիրաքանչիւրոց մինչ առ մեզ զբովանդակութիւնն չափաբերել, եւ որ վասն անցիցն Հայոց ի տաճկաց պետութիւնէն ներգործեցաւ ... եւ ի հին պատմագրաց զմեր բնիկ տերանցն տոհմին Արծրունեաց գիրն եւ զտեղին բացայայտեսցուք ի պատմութեան աստ, զի յայտ յանդիման երեւեսցին արիութիւնք առաքինութեանց ըստ անուանց եւ տեղաց եւ ժամանակաց» (I, էջ 10): Այսպիսով, նա իր առջեւ երկու խնդիր է դնում 1. առեղծել Արծրունիների տոհմի ծագումնաբանությունը, ցույց տալով նրանց տեղն ու դերը հայոց պատմությունում եւ 2. գրել ժամանակակից պատմությունը: Այդ խնդիրները լուծելու համար «...որ ինչ ընդ այսոքիւք պատկանի ստորոգութիւնք զրուցատրութեանց՝ համառօտեսցուք ի մատեանս այսոսիկ, ըստ կարի մերում օժանդակեալ ի գրոց պատմութեանց մարգարէականաց եւ Նորուց վարդապետաց եկեղեցւոյ Քրիստոսի, եւ արտաքին վիպապատմացն աշխատասէր եւ մտահարուստ արանց» (I, էջ 10): Այսպես, Թովման պարագծում է աղբյուրների այն շրջանակը, որի վրա հենվել է իր գիրքը գրելիս:*

*Աղբյուրագիտական տեսակետից «Պատմութիւն տանն Արծրունեաց»-ը կարելի է բաժանել երկու մասի: Առաջին, կոմպիլյատիվ մասի մեջ մտնում են առաջին եւ երկրորդ գրքերը, ինչպես նաեւ երրորդ գրքի մոտավորապես սկզբնական 20 գլուխները, որից հետո, կարելի է վստահ ասել, սկսվում է Թովմայի ինքնուրույն շարադրանքը, այսինքն՝ աղբյուրագիտական*

[1] Սույն հոդվածը մեր՝ Թովմայի «Պատմության» ռուսերեն թարգմանությանը կից (Երեւան, 2001) առաջաբանի մի մասի վերամշակված տարբերակն է:

տեսակետից երկրորդ մասը:

Իր գործը գրելիս Թովման օգտվել է բոլոր մատչելի աղբյուրներից՝ գրավոր, բանավոր (ավանդություններ, առասպելներ, ականատեսների վկայություններ) եւ նյութական (քաղաքների, տաճարների, ջրաբաշխման համակարգերի, պաշտպանական կառույցների նկարագրություններ):

Հին հայոց մատենագրության հուշարձաններից Թովմայի Պատմության առաջին գրքի հիմնական աղբյուրներն են՝ 1. Մովսես Խորենացու «Հայոց Պատմությունը», որտեղից նա փոխ է առնում պատմական տվյալներ եւ որին ձգտում է նմանվել ստեղծագործության կառուցվածքի, լեզվի, ոճի, ինչպես նաեւ պատմական նյութերի մշակման ձեւերի տեսակետից, 2. Եվսեբիոս Կեսարացու երկմասնյա Քրոնիկոնը, որից նա քաղել է բազմաթիվ տեղեկություններ հին աշխարհի, հատկապես Ասորեստանի պատմությունից եւ ասորեստանյան թագավորների անվանացանկերը: Այս երկու հիմնական աղբյուրներից քաղած նյութերը հարստացվում են լրացուցիչ աղբյուրների նյութերով, ինչպիսիք են՝ Փավստոս Բուզանդը, Ղազար Փարպեցին, Փիլոն Ալեքսանդրացին, Եպիփան Կիպրացին, Եղիշեն, Ագաթանգեղոսը, «Պատմութիւն Աղէքսանդրի Մակեդոնացւոյ», 7-րդ դարի «Անանուն աշխարհագրութիւն»-ը, «Անկանոն գիրք Հին կտակարանի», Աբրահամ Խոստովանողի «Համառօտութիւն»-ը, «Պատմութիւն վասն Դաւթի եւ Մովսէսի» անվավեր պատմվածքը:

Թովման միշտ չէ, որ հիշատակում է իր աղբյուրները: Այսպես, գրքի սկզբում հիշատակելով Մովսես Խորենացուն եւ Եվսեբիոս Կեսարացուն, նա իր հետագա շարադրանքի ընթացքում հղումներ է անում այն դեպքում, երբ հաղորդվող, իր տեսակետից կարեւոր փաստը կարոտ է որեւէ հեղինակավոր աղբյուրի լրացուցիչ վկայակոչման, ընդ որում, նա հաճախ վկայակոչում է ոչ միայն տվյալ տեղեկության իրապես գոյություն ունեցող աղբյուրը, այլ նաեւ աղբյուրներ, որոնք չէին կարող ծառայել նրան որպես այդպիսիք, ինչպես, օրինակ, Հուլիանոս Հալիկարնացու 4-րդ գիրքը: Երբեմն ինչ-որ մի աղբյուրից քաղած տեղեկությունը նա վերագրում է մեկ ուրիշին, օրինակ՝ պատմելով ինչպես Սեմը տեղափոխել է Ադամի ոսկորները տապան, իսկ ջրհեղեղից հետո թաղել Գողգոթայում, Թովման վկայակոչում է Փիլոն Ալեքսանդրացուն, մինչդեռ սույն տեղեկությունը քաղել է Հին կտակարանի անվավեր գրքերից[2]:

[2] Տե՛ս՝ «Թանգարան հին եւ նոր նախնեաց. Ա. Անկանոն գիրք, Բ. Անկանոն գիրք Հին Կտակարանի», էջ 26. Վարդան պատմիչը նույնպես գրում է, որ երբ Նոյը դուրս եկավ տապանից, ապա բաժանեց երկիրը իր երեք որդիների միջեւ, «Եւ մասն ինչ յարեւմտից հատեալ՝ ետ Մանիտոնի, որ խնդրեաց յոսկերացն Ադամայ, որ ունէր Նոյ ի տապանն...» /Մեծին Վարդանայ Բարձրաբերդեցւոյ Պատմութիւն տիեզերական, Մոսկվա, 1911, էջ 15:

Սովորաբար այդ տեսակ ճշմարտանման, սակայն անվավեր հղումներ **Թովման** անում է այն դեպքում, երբ ձգտում է ավելի շահավետ լույսի տակ ներկայացնել Արծրունյաց տոհմի իշխաններին եւ հիմնավորել նրանց քաղաքական նշանակալիությունն ու սեփականատիրական իրավունքը:

Պատմելով, օրինակ, թե ինչպես 871 թ. Աշոտ Արծրունին փորձեց վերադարձնել Վասպուրականի իշխանների տիրակալության ներքո Ամյուկ ամրոցը, որտեղ մոտ հարյուր տարի դրանից առաջ հաստատվել են Ութմանիկ արաբական ցեղի ներկայացուցիչները, **Թովման** գրում է. «Բայց Աշոտ գնացեալ տայ պատերազմ ընդ ծովեզրեցիսն, որք Ութմանիկ կոչին, որք ամրանային ի յԱմիւկ անկասկածելի քարանձաւին, վասն զի ըստ Պտղոմեայ եւ Աղեքսանդրի (Պապպի) սահմանադրութեանն, կամ թէ մեր Արտաշէսի որդւոյ Սանատրկոյ՝ ի Վասպուրական գաւառացն համար թուեալ է գաւառն այն, զոր Ճ ամօք առաջ հանեալ էր բռնկալութիւնն տաճկաց ի Վասպուրական պետութենէ», (III, էջ 18): Սույն հատվածում նկատելի է **Թովմայի** որոշակի միտումը՝ հիմնավորել Արծրունյաց իշխանների տիրակալական իրավունքը Ամյուկ ամրոցի նկատմամբ հղումով հին հեղինակությունների վրա: Աշխարհագրական առումով այդպիսիք էին Պտղոմեոսը եւ Պապպը, իսկ քաղաքական տեսակետից, որպես այդ իրավունքի երաշխավորողը ներկայացվում է Արտաշես թագավորը: Այդ անունները **Թովման** քաղել է 7-րդ դ. հայոց աշխարհագրությունից, որտեղ բազմիցս հիշատակվում են Պտղոմեոսը եւ Պապպը, մի անգամ Ամյուկ բերդը, մի անգամ էլ Արտաշես թագավորը: **Թովման** օգտագործել է Աշխարհագրությունում հիշատակված այդ անունները եւ դրանք միացրել իրեն անհրաժեշտ իմաստավորմամբ: Ի դեպ, դա **Թովմայի** երրորդ գրքում գրավոր աղբյուրի միակ հղումն է:

Նույն տեսակի վկայակոչումների շարքը պետք է դասել նաեւ **Թովմայի** հղումը Մամբրե Վերծանողի, Մովսեսի եւ Թեոդորոս Քերթողի վրա: Ըստ **Թովմայի**՝ Կղեոպատրան «...թագաւորեալ Եգիպտոսի եւ Աղէքսանդրի եւ բացեալ զտուն դիւանապահ մատենիցն եւ գտեալ զսերունդն Սենեքերիմայ, ...ետ տանել զդիւանն մազաղաթեայ յունարէն գրով հանդերձ պատարագօք՝ Տիգրանայ թագաւորի Հայոց, որ չորրորդ կացեալ թագաւոր ի Վաղարշակէ Պարթեւէ... Իսկ առ մեզ հասին գրոյցքս այս ըստ մնացորդաց պատմագրացն առաջնոցն, ի Մամբրէէ Վերծանողէ եւ ի նորուն եղբօրէ Մովսէսէ կոչեցելոյ, եւ միւսումն Թէոդորոս Քերթող, որք լեալ էին յաշակերտութենէ Ղեւոնդ քահանայի... Սոքա հրամանաւ Վահանայ Արծրունւոյ փոյթ յանձին կալեալ՝ խուզել քննել կարգել ի համառօտ բանս զաճմունս ազգացն անցելոց...», եւ դրանց թվում, պետք է ենթադրել, նաեւ Արծրունյաց տոհմին: Քննվող հատվածը զուգորդվում է Մովսես Խորենացու 2-րդ գրքի 10-րդ գլխի հետ,



*որտեղ վերջինս սկսում է «...պատմել քեզ ի հինգերորդ գրոցն Ափրիկանոսի ժամանակագրի, որում վկայէ Յովսեպոս եւ Հիպողիտայ եւ այլք բազումք ի Յունաց: Քանզի նա բովանդակ փոխադրեաց որ ինչ քարտեսս դիւանին Եդեսիայ ...որ յաղագս թագաւորաց մերոց պատմեր ... Եւ վկայ քեզ ի մօտոյ երաշխաւորեսցէ Եկլէսիաստէ գիրք Եվսեբի Կեսարացւոյ, զոր ետ թարգմանել երանելի վարդապետն մեր Մաշտոց ի հայ լեզու: Խնդիր արասցես ...ի գաւառն Սիւնեաց, եւ գտցես յառաջին հագներգութեան յերեքտասաներորդ թուին, զի վկայէ յեդեսիայ դիւանին լինել ամենայն գործոց առաջնոց թագաւորացն մերոց մինչեւ զԱբգար, եւ զկնի Աբգարու մինչեւ Երուանդ: Որ եւ այժմ կարծեմ գտանի պահեալ ի նոյն քաղաքի»: (II, 10)[3]:*

*Ինչպես Մովսես Խորենացու, այնպես էլ Թովմայի մոտ հանդես են գալիս հին արխիվներում հայտնաբերված ձեռագրերը, երկուսի մոտ էլ դրանք թարգմանվում են համապատասխանորեն՝ ասորերենից հունարեն եւ հունարենից՝ հայերեն: Մով. Խոր. որպես աղբյուր է օգտագործում Ափրիկանոսին, որը իրագործել է թարգմանությունը, ինչը վկայում են Հովսեփը եւ Հյուպողիտը, իսկ Թով. Արծ.՝ Մամբրեի գրույցների գիրքը, որի թարգմանությունը Մամբրեն կատարել է Մովսեսի եւ Թեոդորոս Քերթողի օգնությամբ (որպես զուգահեռ Մով. մոտ ներկայացրած անունների), վերջապես Մով. Խոր. հիշատակում է երանելի ուսուցիչ Մաշտոցին, Եվսեբիոս Կեսարացու վկայաբերված եկեղեցական պատմության թարգմանչին, իսկ Թովման՝ Ղեւոնդ քահանային, երեք վերոհիշյալ ժամանակագիրների ուսուցչին: Սյուժետային գծերի նմանությունը ակնհայտ է:*

*Մամբրեն, ինչպես հայտնի է[4], ծնվել է 5-րդ դ. երկրորդ կեսին, ուսումը ստացել է Հունաստանում, որտեղ նրա աշակերտակիցներն էին Մովսեսը, Դավիթը, Աբրահամը եւ Պողոսը (այսպես կոչված աշակերտների երկրորդ խումբը, առաջին խումբը ուղարկվել է Հունաստան Սահակ Պարթեւի օրոք), որոնց հետ նա վերադարձել է Հայաստան Վահան Մամիկոնյանի մարզպանության (485-506) օրոք[5]: Նրա գրական գործունեությունը համընկնում է 5-րդ դ. վերջի - 6-րդ դարի առաջին տասնամյակների հետ, ինչը հաստատվում է*

---

[3] Եկեղեցական պատմության առաջին գրքի 13-րդ գլխում Եվս. Կես. գրում է «Ունիս հեզ վկայութիւն յիշատակաց ի դիւանէ անտի Եդեսիայ քաղաքէ, յորում թագաւորեացն Աբգար: Ի յիշատակարանս հասարակաց յորս վաղեմի անցք պատմութեան քաղաքին եւ գործք քաջութեան Աբգարու դրոշմեալ կային, գտաք եւ զայսոսիկ պահեալ մինչեւ մեր ժամանակս. եւ չէ ինչ անդէպ լսել զնոյն թուղթ, զոր առեալ է մեր ի տանէ անտի դիւանին, եւ յԱսորւոց բարբառոյն յղեալ ի Յոյն ...» (էջ 60-61):

[4] Տե՛ս Ն. Անդրիկյանի հանգամանալից հոդվածը՝ «Մամբրէ Վերծանող», «Բազմավէպ», Վենետիկ, 1904, էջ 298-304, 352-358:

[5] Նույն տեղը, էջ 301-302:

*նաեւ նրա «Վերծանող» մականվամբ, որը, ինչպես նաեւ «Քերթող» ու «Քերթողահայր» բառերը գրական շրջանառության մեջ է մտել սկսած 6-րդ դարից[6]:*

*Թովման, առաջինը հայ միջնադարյան պատմիչներից, հիշատակում է Մամբրե Վերծանողին, ընդ որում, որպես սուրբ Սահակ Պարթեւի եւ սուրբ Մեսրոպ Մաշտոցի ժամանակակցի, մինչդեռ այդ անունը անծանոթ է 5-րդ դ. մատենագիրներին[7]: Դա մտածել է տալիս, որ գոյություն ուներ ինչ-որ մի աղբյուր, որը պետք է փնտրել 7-8-րդ դարերում: Թվում է, որ այդ աղբյուրն է անվավեր մի գրվածք, որը մեզ հասել է հետեւյալ վերնագրի տակ. «Պատմութիւն սուրբ վարդապետաց Հայոց Մովսէսի Քերթողի եւ Դաւթի Անյաղթ փիլիսոփայի, որ կոչի էակք»[8], «Սուրբ վարդապետաց Մովսիսի եւ Դաւթի հարցմունք ընդ երկարնակ չարափառսն»[9], «Վիճաբանութեան գիրք Դաւթի եւ Մովսէսի Խորենացւոյ ընդ Քաղկեդոնս»[10], «Յաղագս սրբոց վարդապետաց Հայոց Մովսէսի եւ Դաւթի»[11]:*

*Սույն անվավեր գրվածքին կից ձեռագրերում առկա է հիշատակարանը, որը պահպանվել է մի քանի տարբերակներով[12]: Ըստ երեւույթին, իր նախնական տեսքին ավելի մոտ է այն տարբերակը, որը պահպանվել է 1313 թ. Երուսաղեմի ձեռագրում. «Եւ այդ յետ բազում ժամանակաց գրեաց զգիրս զայս, իբրեւ Աստուած հասոյց զմեզ ի ժամանակս յայս, յորում եւթնասուն ու վեց էր թուականն հայոց (-627): Ես քարտուղարս Հայոց եւ սուրբ Թագաւորացն պրոտոսպաթար ստացող եղէ գրոցս այսմ: Բայց զարմանալի է ի նախկի յիշատակի գրոցս յայսմիկ, եթէ գրեցաւ (գիրքս այս) էակս հրամանաւ Թարգ-*

---

[6] Նույն տեղը, էջ 304: Պ. Անանեան, Մովսես Քերթողահայր եւ Մովսես Խորենացի, «Բազմավէպ», Վենետիկ, 1991, թիվ 1-2, էջ 20-21:

[7] Ն. Անդրիկյանը ենթադրում է, որ Մամբրեի անունը կարող է հիշատակված լինել ի թիվս այլ աշակերտների, Վահան Մամիկոնյանին հասցեագրված Ղազար Փարպեցու Թղթի (6-րդ դ. սկիզբը) այն երկու կորսված էջերում, որտեղ գտնվում էր աշակերտների անվանացանկի շարունակությունը (էջ 302-303):

[8] Գարեգին Ա. կաթողիկոս. Յիշատակարանք ձեռագրաց, հ. 1, Անթիլիաս 1951, էջ 17-18:

[9] Հայ ձեռագրերի հիշատակարաններ. կազմեց Ա. Ս. Մաթեւոսյան, Եր., 1989, էջ 13:

[10] «Հնոց եւ նորոց». հրատարակեց Գարեգին վ. Սրուանձտեանց. Կ. Պոլիս, 1874, էջ 147-149: Սույն վերնագիրը մեջ է բերվում Մշո սուրբ Կարապետի ձեռագրերի ցուցակում (էջ 140-149):

[11] Նույն տեղում, էջ 87:

[12] Դրանցից երկուսը իր ուսումնասիրությունում ներկայացնում է Ն. Անդրիկյանը, ընդգծելով, որ հիշատակարանի տեղեկությունները անվավեր են ու ոչինչ չեն հաղորդում Մամբրեի կյանքի ժամանակի եւ նրա երկերի մասին: Ելնելով գրվածքի հեստորականների դեմ բանավիճական ուղղվածությունից, Ա. Անդրիկյանը այն թվագրում է 6-րդ դ. 30-ական թվականներով (նույն տեղ, էջ 301):

մանեալ ի յունաց ի հայս տէառն Յովհաննիսի Հայոց կաթողիկոսի Գաբեղենացւոյ ի քսանուհինգերորդի (-576) թուականութեան Հայոց»[13]:

Հիշատակարանի երկրորդ տարբերակը ներկայացրել են Գ. Սրվանձտյանցը[14] եւ Ա. Մաթեւոսյանը[15]. այն նախորդից տարբերվում է վերջում ավելացրած նախադասությամբ՝ «վկայէ այսմիկ Սարգիս Արաբացի եպիսկոպոս ճշմարիտ վկայութեամբ», ինչպես նաեւ սկզբնական տողով[16]:

Հիշատակարանում հստակ նշմարվում են երկու ժամանակային շերտ՝ 6-րդ դարի վերջին քառորդը[17] եւ 7-րդ դարի առաջին քառորդը: «Պատմութիւն սբ. վարդապետաց»-ի հետ անմիջականորեն կապված է հիշատակարանի առաջին կեսը, որը վերաբերում է 627 թվին, ինչը հաստատվում է որոշ մանրամասներով, քաղված, ինչպես վերը նշվեց, քննության առարկա գրվածքից: Վերջինը բավականին բազմազան բովանդակություն ունի, այն է՝ հայոց գրերի գյուտի պատմությունը, Կարին-Թեոդոսուպոլի կառույցի ավանդությունը, քաղկեդոնականության դեմ Մովսեսի եւ Դավթի պայքարի բանավեճերում նրանց փայլուն հաղթանակի մասին պատմվածքը, որը, թերեւս սույն գրվածքի հիմնական կորիզն է հանդիսանում[18]:

«Պատմութիւն սբ. վարդապետաց»-ից եւ դրան կից հիշատակարանից Թովման քաղել է հետեւյալ տեղեկությունները. Մամբրե Վերծանողը սբ. Սահակի եւ սբ. Մեսրոպի, ինչպես նաեւ 451 թ. Վարդան Մամիկոնյանի գլխավորած ապստամբության ժամանակակիցն է, նա գրել է հունարենից հայերեն թարգմանված զրույցների գիրք, մնացած մանրամասները նրա երեւակայության պտուղներն են: Այսպիսով, ստեղծագործաբար մշակելով անվավեր

---

[13] Գարեգին Ա. կաթողիկոս, Յիշատակարանք ձեռագրաց, հ. 1, Անթիլիաս, 1951, էջ 17-18:

[14] «Հնոց եւ նորոց», Կոստանդնուպոլիս 1874, էջ 87:

[15] Հայ ձեռագրերի հիշատակարաններ, Եր., 1989, էջ 14:

[16] Գ. Սրվանձտեանցի մոտ՝ «Արար եւ Մամբրէ Պաւղոս եւ Աբրահամ ճառս ոչ սակաւս պէս պէս խորհրդոց»: Իսկ Ա. Մաթեւոսյանի հրատարակած հիշատակարանի սկզբին կցվել են բուն բնագրի վերջին երեք պարբերությունները, համապատասխանորեն՝ ձեռագրի 376ա-376բ եւ Գ. Սրվանձտյանցի հրատարակած բնագրի 84-86 էջերը:

[17] Հիշատակարանի այդ երկրորդ մասը, ինչպես համոզիչ ապացուցում է Ս. Արեւշատյանը, ոչ մի կապ չունի քննության առարկա անվավեր գրվածքի հետ, այլ ուղեկցել է Կոստանդնուպոլսի հայրապետ Եվտիքեսի (550-575, 577-582) «Գիրք էակք»-ին՝ փիլիսոփա-աստվածաբանական տրակտատին, գրված ի պաշտպանություն քաղկեդոնականության (տե՛ս՝ "Формирование философской науки в древней Армении (V-VI вв.)", 229-240:

[18] Պատճառը, թե ինչու քննվող գրվածքի հիշատակարանին կցվել է «Գիրք էակք»-ի հիշատակարանը, թերեւս պետք է փնտրել գրվածքի հակաքաղկեդոնական ուղղվածության մեջ, որը հենց այդ պատճառով ձեռագրերում կարող էր կցված լինել, որպես հակակշիռ Եվտիքեսի տրակտատին:

գրվածքը, իր հիշատակարանով հանդերձ եւ Մով. Խոր. Պատմության վերոհիշյալ հատվածից քաղած տեղեկությունները, **Թովման** հնարել է իր հղումը Մամբրեի հին աշխատության վրա:

«Պատմութիւն սբ. վարդապետաց»-ի հետ սերտ կապի մեջ է գտնվում նաեւ **Թովմայի** կողմից Մովսես Խորենացու նույնացումը Մովսես Քերթողի, Քերթողահոր հետ[19], որովհետեւ **Թովմայից** առաջ Մովսես Խորենացին ու Մովսես Քերթողը հանդես են գալիս որպես միեւնույն անձնավորություն հենց այդ գրվածքում, իսկ դրա էջ 73-ում Մովսեսը անվանվում է նաեւ «Քերթողահայր»: Եվ քանի որ **Թովման** Մով. Խոր. Պատմության հետ միաժամանակ օգտվում էր նաեւ այդ անվավեր գործից, որտեղ սկզբից Մովսեսը ներկայացվում է որպես սբ. Սահակի ու սբ. Մեսրոպի աշակերտ, հետո հիշատակվում է որպես Քերթող, Քերթողահայր, իսկ ապոկրիֆի վերջում էլ պատմվում է, թե ինչպիսի հանգամանքներում է Մովսեսը գրել իր Պատմությունը, ապա **Թովման** կարող էր վստահորեն նույնացնել երկու Մովսեսներին: Բացառված չէ, որ ձեռագրերում նա տեսել է նաեւ Մովսես Քերթողահոր անվամբ պահպանված մի շարք գործեր, ինչպես «Պատմութիւն սրբոց Հռիփսիմեանց», «Գիրք Պիտոյից» եւ այլն[20]:

Հայագետների ուշադրությունն են գրավել նաեւ **Թովմայի** հղումները Մով. Խոր. չորրորդ գրքի վրա: Այդ հարցի վերաբերյալ ծավալված վիճաբանության մանրամասները հանգամանալից ներկայացված են **Ա. Ս. Մաթեւոսյանի** ուսումնասիրությունում «Մովսէսի Խորենացւոյ վերադարձութիւն ի վերայ երեցունց դրուագեալ հատուածին», որը լույս է տեսել որպես հավելված, Մով. Խոր. **1997 թ.** հրատարակությունում[21]: Հավելվածին կից համառոտ ներածական խոսքում հրատարակության խմբագիր **Գ. Սարգսյանը** գրում է. «Վերջերս Մատենադարանի աշխատակից Արտաշես Մաթեւոսյանը հնագույն նյութերից չորրորդ գրքի վերականգնման փորձ կատարեց՝ ծանոթագրությամբ եւ ուսումնասիրությամբ, որը ներկայացնում ենք ընթերցողի ուշադրությանը»[22]:

Անդրադառնալով Մովսես Խորենացու չորրորդ գրքի խնդրին, ակա-

---

[19] Հ. Պ. Անանյանը իր «Մովսէս Քերթողահայր եւ Մովսէս Խորենացի» հոդվածում («Բազմավէպ», Վենետիկ, 1931, 1-2), նշելով, որ Թովմա Արծրունին առաջինը նույնացնում է նրանց (էջ 7), ապացուցում է, որ դրանք տարբեր անձնավորություններ են եղել, որոնք ապրել են առաջինը՝ 7-րդ դ., երկրորդը՝ 5-րդ դ.: Նման տեսակետ է հայտնում նաեւ Նորայր եպ. Ծովականը («Վանատուր», Երուսաղեմ, 1993):

[20] Տե՛ս՝ նույն տեղում, էջ 26:

[21] Մովսես Խորենացի, Հայոց պատմություն: Թարգմ. ներած. եւ ծանոթ. Ստ. Մալխասյանց. Եր., 1997: Հավելված Ա. Դրուագ չորրորդ. Մովսէսի Խորենացւոյ վերադարձութիւն ի վերայ երեցունց դրուագեալ հատուածին: Բնագրի վերականգնման փորձ, ուսումնասիրություն եւ ծանոթագրություններ Արտաշես Մաթեւոսյանի:

[22] Նույն տեղում, էջ 334:

*նավոր հայագետ Գ. Տեր-Մկրտչյանը նշել է, որ Թովմա Արծրունու ակնհայտ վկայության դեմ շատ դժվար է պայքարել ենթադրությունների եւ տրամաբանական կառուցվածքների օգնությամբ, արդարացիորեն նկատելով, որ ոչ Խորենացու Պատմության, ոչ էլ հենց իր՝ Թովմայի գրքի բովանդակությունը հիմքեր չեն տալիս եզրակացնելու, որ գոյություն է ունեցել չորրորդ գիրքը*[23]*:*

*Հավակնություն չունենալով լուծել 4-րդ գրքի խնդիրը, կցանկանայի ընթերցողի ուշադրությունը գրավել Թովմայի առաջին գրքի շարադրանքի յուրահատկության վրա: Թովմայի վկայակոչումների առանձնահատկություններից երեւում է, որ նա շատ ազատ էր վերաբերվում իր աղբյուրների տեղեկություններին, եւ իր գործը բազում դեպքերում չի համապատասխանում իրական պատմական փաստերին, չնայած առաջին հայացքից թվում է ճշմարտանման, ինչը, ընդհանրապես, բնորոշ է ապոկրիֆիկ ժանրին պատկանող ստեղծագործություններին (իսկ Թովմայի Պատմության առաջին գիրքը, որ գրված է «ըստ ազգաբանութեան Արծրունեաց սեռի», որոշ իմաստով հենց այդպիսին է), հնարանքը ներկայացնել հնարավորին չափ ավելի ճշմարտանման, որովհետեւ միայն այդ դեպքում այն ընթերցողի վրա կունենա ցանկացած ազդեցությունը:*

*Այժմ անդրադառնանք Խորենացու Պատմության այն երեք հատվածներին, որոնք անմիջական առիթ են տվել Թովմային խոսելու չորրորդ գրքի մասին:*

*Ա. «Արդ օրէն էր մեզ աստանօր զկարծիս (այսինքն՝ Բերոսոսի, Բազմավէպի եւ Արյուդենոսի) յայտնել ըստ կարողութեան ... այլ վասն երկարութեան առաջիկայ գործոյս՝ այլում տեղւոյ եւ ժամանակի զայսորիկ թողեալ» (I, 4): Այստեղ մենք գործ ունենք սովորական էտիկետային բանաձեւերից (ֆորմուլաներից) մեկի հետ՝ բանաձեւ, որ օգտագործվում էր միջնադարյան մատենագիրների կողմից, անկախ իրենց ազգային պատկանելությունից*[24]*: Այդ*

[23] Գ. Տեր-Մկրտչյան, Խորենացու Պատմության ուսումնասիրություն, Վաղարշապատ, 1890, էջ 20

[24] Գրական էտիկետի բանաձեւերի համար բնորոշ է, որ դրանք, որպես օրենք, ավարտում են որեւէ որոշակի բովանդակություն ունեցող հատվածը՝ դա կարող է լինել ներբողյան, ողբ, վկայաբանություն, կամ էլ տվյալ երկի շրջանակներից դուրս եկող հարցի ավելի մանրամասն քննություն, եւ պետք է՝ ա) համոզեն ընթերցողին, որ հեղինակը համեստ է, որ նրա մոտ բացակայում է մեծամտության մեղքը, այստեղից բխում է նվաստացող ինքնաներկայացումը (ինչպես օրինակ՝ «Ապա փոյթ ինձ Թովմայի, որ ոչ վերջոտենալ կալայ ամօրով զյետին տեղին, այլ փոխանակ սոցա մատեայ ի տեղիս այս, ձեռն արկեալ անիմաստաբար լի անմտութեամբ եւ անհանճարութեամբ բուռն հարկանելով զմեծ այս քերթածութենէ» (I, 11). բ) պետք է արդարացնի անցումը ավելի վեհ ժանրից (ներբողյան, ողբ եւ այլն) դեպի ավելի հասարակ՝ ժամանակագրականը. սովորաբար, որպես արդարացուցիչ հանգամանք է ծառայում ժամանակի սղությունը (Յով.

խոսքերը հեղինակի տուրքն է միջնադարյան գրականությունում ընդունված քաղաքավարության ճարտասանական ձևերին:

Շարունակելով իր խոսքը, հաջորդ պարբերության վերջում Մով. Խոր. այդ բանաձևը կրկնում է փոքր ինչ ձևափոխված տեսքով.

Բ. «Արդ զայլսն վասն սորա (խոսքը Աբելի ու Ննովսի կոչված լինելու մասին է) ի տեսութեանց ի հրաւիրեալն մեր յուղարկեսցուք տեղի, իսկ որ առ ձեռն պատրաստն է՝ ասասցուք»:

Մով. Խոր. նույն էտիկետային բանաձև պարունակող հատվածներին Թովմայի մոտ համապատասխանում են հետևյալ երկու վկայակոչումները.

1. «... եւ Նինոս ի զաւակէ Քամայ ըստ Աբիդոնեայ Քաղդեացւոց եւ ըստ Եվսեբեայ Կեսարացւոյ, եւ ըստ Մովսէսի Խորենացւոյ, եւ ըստ Յուլիանու Աղիկարնացւոյ ստուգաբանի»: Մովսես Խորենացին Աբյուդենոսին հղում է 1-ին գրքի 4-րդ գլխի սկզբում, այդ անվանը Թովման ավելացնում է Եվս. Կես., որից օգտվել են և Մով. Խոր. և անձամբ ինքը, իր հիմնական աղբյուր՝ Մով. Խորենացուն և Հուլիանոս Հալիկառնացուն: Վերջինիս անվամբ Թովման նենգափոխում է Հերոդոտոս Հալիկառնացուն, որին հիշատակում է համապատասխան տեղում Եվս. Կես.: Մինչդեռ Հուլիանոս Հալիկառնացին՝ 5-րդ դ. վերջի և 6-րդ դարի առաջին տասնամյակների եկեղեցական գործիչ, ամբողջովին կլանված դավանաբանական պայքարով, ոչ մի պատմական գործ, մանավանդ Ասորեստանի վերաբերյալ, չի գրել, սակայն Թովման վկայակոչում է նրան, թերևս այն պատճառով, որ համարում էր ավելի հայտնի և հեղինակավոր անձնավորություն[25]:

2. «...եւ առանձին թագաւորեն Ասորեստանեայքն՝ ի կանոնի (Եւսեբեայ) անդ գտցես զՆինոս եւ զՇահամիր եւ զԱրբահամ եւ զվեշտասաներորդ

---

Դրասխ.՝ Եւ արդ մի եւս ինձ այլ յիրս յառաջաբանութիւն եղիցի ծախել զժամանակս, վասն զի ծերութիւն ցաւագին՝ մահ առ դուռս պատրաստ ունի», էջ 5: Եւ մեք զկարգ պատմութեանց ... յառաջ վարեսցուք, զի ոչ է ժամ մեզ դեգերումն առնել» (Թով. Արծ., 1, էջ 6): Կամ էլ ընթերցողին ավելորդ մանրամասներով ձանձրույթ պատճառելու մտավախությունը, ինչպես նաև, «... ի կարգ բանին ...» վերադառնալու անհրաժեշտությամբ: Վերջապես մանրամասն քննելով որևէ հարց, հեղինակը խոստանում է ընթերցողին կրկին անդրադառնալ դրան «յայլում տեղի» և «յայլում ժամանակի», միաժամանակ կարծես թե ակնարկելով իր գիտելիքների խորության մասին: Նման բանաձևերը ընդունված էին միջնադարյան գրականություններում և ամենևին պարտադրական չէին հեղինակի համար, այնպես որ սխալ կլինի անվերապահորեն հավատալ հեղինակի ինքնանվաստացնող հայտարարություններին, ինչպես նաև նրա խոստումներին՝ վերադառնալ արդեն բավականաչափ լուսաբանված հարցի քննությանը «այլ ժամանակին» և «այլ տեղում»:

[25] Հուլիանոս Աղիկարնացու և հուլիկանության մասին տե՛ս Տեր-Մինասյան Ե., Հայոց եկեղեցու հարաբերությունները ասորոց եկեղեցիների հետ, Էջմիածին, 1908, էջ 227-228:

հարստութիւն Եգիպտացւոց, եւ ի չորրորդ դպրութեանն Յուլիանու Ալիկարնայցւոյ եւ ի չորրորդ դպրութեանն Մովսէսի»։ Առաջին մասով այդ հղումը (Եվս. Կես. կանոնի վրա) ճշմարիտ է, սակայն երկրորդ մասում Հուլիանոսի գոյություն չունեցող չորրորդ գրքի կողքին հայտնվում է Մով. Խոր. չորրորդ գիրքը։ Հարց է ծագում, թե ինչու չորրորդ գիրքը չի հիշատակվում առաջին դեպքում։ Թվում է, որ միակ պատճառը թաքնված է Մով. Խոր. օգտագործած էտիկետային ֆորմուլաների ձեւում։ Առաջին անգամ նա ուղղակի գրում է, որ ընդհատում է իր խոսքը, «... այլում տեղւոյ եւ ժամանակի զայսոսիկ թողեալ...», եւ Թովման ընկալում է այն հենց այնպես, ինչպես որ պետք է, այսինքն՝ որպես անցում հաջորդ հարցի քննությանը։ Երկրորդ անգամ Մով. Խոր. ներկայացնում է էտիկետային բանաձեւը, որպես հղում նախորդի վրա՝ «... ի հրաւիրեալն մեր տեղի յուղարկեսցուք»։ Այստեղ Թովման արդեն հնարավորություն է տեսնում մտցնել սեփական ճշգրտումը՝ չորրորդ գիրքը, որը Մով. Խոր. խոստանում է գրել «այլ տեղում» եւ «այլ ժամանակին»։ Իր շարադրանքի հետագա ընթացքում Թովման չի անում հղում Մով. Խոր. չորրորդ գրքին եւ միայն, երբ հասնում է իր առաջին գրքի ավարտին, որը համապատասխանում է Մով. Խոր. երրորդ եւ վերջին գրքին, նա այդ գրքի 67-րդ գլխում կրկին հանդիպում է էտիկետային բանաձեւին, որով Մով. Խոր. ամփոփում է իր սբ. Սահակ Պարթեւին նվիրված գովքը։

3. «Զորմէ պարտ էր մեզ հրաշափառագունիւ անցանել բանիւ, ըստ արժանի սրբոյ հօրն դրուատից այլ զի մի յերկարութիւն ճառիցս լիցի ձանձրութիւն ընթերցողաց՝ այլում տեղւոյ եւ ժամանակի զայսոսիկ թողցուք, արտաքոյ այսց գրոց, ուր զսկզբանն հրաւիրեցաք առնել թելադրութիւն», (III, 67)։ Մով. Խոր. սույն հղմանը՝ Թովմայի մոտ համապատասխանում է հետեւյալ հատվածը. «Սահակս այս այն Սահակ է, որոյ հրամանաւ գրեաց մեծ վարդապետն Մովսէս տիեզերահռչակեալ քերթողն զգիրս Պատմութեան հայոց մեծաց, հրաշագան հորինուածով, սկսեալ յԱդամայ մինչ ի կայսր Զենոն ... որպէս գրեալ աւանդեցաւ մեզ այս ի չորրորդ դրուագի խոստաբանեալ պատմութեանն Մովսէսի Խորենացւոյ, վերադարձութեան ի վերայ երեցունց դրուագեալ հատուածին»։

Ինչպես տեսնում ենք, Մով. Խոր. չորրորդ գրքի հետ կապված Թովմայի հղումները հայտնվում են զուգահեռաբար Մով. Խոր. բնագրում նշված էտիկետային բանաձեւերին[26], ինչից կարելի է հետեւեցնել, որ Թովման իր առջեւ

[26] Որոշ իմաստով այս բանաձեւերի կապակցությամբ հնարավոր է զուգահեռ անցկացնել նաեւ Հովսեփոս Ֆլաբիոսի «Հնախօսութիւն հրէից» գործում օգտագործվող բանաձեւերի հետ։ Այսպես, օրինակ՝ 1-ին գրքի 7-րդ գլխում մանրամասն շարադրելով Մովսեսի օրենքների պատմությունը, նա ավարտում է այն համապատասխան էտիկե-

ուներ մեզ հայտնի եռամասնյա Խորենացու Պատմությունը եւ շարադրանքի ընթացքում հղում էր չորրորդ գրքի վրա այն ժամանակ, երբ հանդիպում էր նշված բանաձեւերին: Բովանդակության տեսակետից **Թովմայի** բնագրի տվյալ հատվածը բաղկացած է երկու մասից. 1. «...Սահակս այս այն Սահակ է, որոյ հրամանաւ գրեաց մեծ վարդապետն Մովսէս տիեզերահռչակեալ քերթողն զգիրս Պատմութեան հայոց մեծաց, հրաշագան յօրինուածով, սկսեալ յԱդամայ մինչ ի կայսր Զենոն...»: Այստեղ **Թովման**, ըստ էության, նկատի ունի ոչ միայն մեզ հայտնի Մով. Խոր. եռամասնյա Պատմությունը, այլ նաեւ չորրորդ գիրքը, որտեղ Խորենացին իր շարադրանքը հասցնում է մինչեւ Զենոն կայսրի օրերը: Դա նշանակում է, որ **Թովման**, իմանալով Խորենացու մահվան ժամանակը, հասկանում է, որ չորրորդ գիրքը պետք է բովանդակի սբ. Սահակ Պարթեւի մահվան եւ Զենոն կայսրի գահակալության (474-491) միջեւ ընկած ժամանակաշրջանը: Դա հենց այն է, ինչ սպասելի կլիներ նաեւ մեզ՝ **Թովմայից** բազում դարերով հեռացված ընթերցողներիս համար, ընդ որում գրված նույն գիտական եւ գեղարվեստա-գրական մակարդակով: Սակայն, ինչպես այդ նշում են շատ հայագետներ, նման գրքի ոչ մի հետք անգամ չի նշմարվում ոչ **Թովմա** Արծրունու, ոչ էլ Հովհաննես Դրասխանակերտցու մոտ, մինչդեռ երկուսի համար էլ Խորենացու Պատմությունը համապատասխան ժամանակագրական շրջանակներում ծառայում էր որպես հիմնական աղբյուր: Ավելին՝ երկուսն էլ, այսպես կոչված «չորրորդ գրքի» փոխարեն, օգտագործում են անվավեր, անախրոնիզմներով լի մի գրվածք՝ ժողովրդական ավանդույթ Շավասպ Արծրունու, պարսից մարզպան Վնդոյի, վերջինիս որդի Ներոյի եւ նրանց դեմ պայքարող Վարդան Մամիկոնյանի մասին: Այդ գրվածքը գոյատեւել է ինչպես բանավոր, այնպես էլ գրավոր ձեւով: Դրա հիման վրա

---

տային բանաձեւով. «Այս օրենքների մեծամասնության հնությունը, սակայն, ես ձեռնարկելու եմ այլ երկասիրություններում, որտեղ մտադիր եմ հատուկ խորհրդածել դրանց մասին» ("Иудейские древности", Москва, 1996 , т. I, с. 113): Հաջորդ՝ 8-րդ գլխի վերջում նա կրկին գրում է. «Սակայն նկատի ունենալով գրել հատուկ ուսումնասիրություն այդ օրենքների մասին, ես այլեւս կանգ չեմ առնելու այդ (հարցերի) վրա»: Նման էտիկետային բանաձեւին հանդիպում ենք նաեւ իր Հնախոսության 2-րդ հատորի վերջին՝ 20-րդ գլխում, որն ավարտվում է հետեւյալ խոստումով. «Ես մտադրություն ունեմ ներկայացնելու **չորս գրքից** բաղկացած շարադրությունում մեր՝ հրեական դավանությունը Աստծո եւ նրա էության մասին, ինչպես հավասարապես խոսելու եմ նաեւ օրենքների՝ մեզ որեւէ բան թույլատրող կամ արգելակող պատճառների մասին» (անդ, 20, էջ 305): Այդ կապակցությամբ ծանոթագրությունում կարդում ենք. «Ինչպես երեւում է, Ֆլաբիոսը այդ մտադրությունը չի իրագործել, - համենայն դեպս իրեն պատկանող նման գիրք չի պահպանվել» (էջ 306): Գրքի թարգմանիչ եւ վերջաբանի հեղինակ Գ. Գենկելը համարում է, որ «Ֆլաբիոսի սույն արտահայտությունները պարզապես հարմար բանաձեւեր են որեւէ պատմվածք ավարտելու համար» (էջ 323):

գրված երկու գլուխները **Թովման** տեղադրում է երկրորդ գրքի սկզբում[27], ընդ որում այդ երկու գլուխները, որոնց հիմքում, ըստ էության պետք է լիներ Մով. Խոր. 4-րդ գիրքը, **Թովման** տեղադրում է ոչ թե իր պատմության Արծրունիների ծագումնաբանությանը նվիրված առաջին գրքի վերջում, ինչը սպասելի էր, այլ հաջորդ՝ երկրորդ գրքում: Դրանից կարելի է եզրակացնել միայն այն, որ նշված երկու պատմիչներից ոչ մեկը չի տեսել Խորենացու 4-րդ գիրքը: Մով. Խոր. բնագիրը նույնպես ոչ մի առիթ չի տալիս ենթադրելու 4-րդ գրքի գոյությունը, քանի որ էսխկետային բանաձեւեր պարունակող քննվող հատվածներում Զենոն կայսրը չի հիշատակվում, եւ եթե հետեւենք դրանց բովանդակությանը, ապա Խորենացու ենթադրյալ 4-րդ գիրքը պետք է բովանդակի Բերոսի, Աբյուդենոսի ու Բազմավեպի կարծիքները Նոյի եւ նրա որդիների անունների մասին, Ենովսի եւ Աբելի կողման վերաբերյալ եւ, վերջապես, այն պետք է պարունակի նաեւ սբ. Սահակ Մեծին նվիրված ավելի ընդարձակ ներբող: Նման բովանդակության 4-րդ գիրքը բավականաչափ տարօրինակ կլիներ: Որ **Թովման** դա շատ լավ էր հասկանում, երեւում է վերոբերյալ հատվածի 2-րդ մասից. «... որպէս գրեալ աւանդեցաւ մեզ այս ի չորրորդ դրուագի խոստաբանեալ պատմութեան Մովսէսի Խորենացւոյ, վերադարձութեան ի վերայ երեցունց դրուագեալ հատուածին»:

Այսպիսով, նա փորձում է հաստատել 4-րդ գրքի արժանահավատությունը, հղելով Մով. Խոր. խոստացված 4-րդ գրքի վրա, այսինքն՝ մեկ անհայտի գոյությունը հաստատում է մեկ այլ անհայտով: Դա նշանակում է միայն այն, որ ինչպես իր ծննդաբանության գրքի համար բնորոշ մի շարք դեպքերում, **Թովման** գիտավորյալ կերպով մոլորեցնում է ընթերցողին: Կարծում եմ, որ **Թովմայի** վկայությունը Խորենացու «չորրորդ գրքի» մասին կարելի է դասել Արծրունիների ծագումնաբանության՝ իր գրքի համար ամենասովորական կեղծիքների թվում:

Հղումներ, որոնցում ճշմարտության ինչ-որ չնչին մասը զուգորդվում է հնարանքների զգալի չափի հետ, հանդիպում են ոչ միայն **Թով. Արծ.** մոտ, երբեմն վերածվելով յուրատեսակ մի կաղապարի, դրանք շրջում են ստեղծագործությունից ստեղծագործություն: Այդպիսին է, օրինակ, վկայակոչումն այն մասին, թե Աբգարը «... առաջին ի հեթանոսական թագաւորաց սկիզբն արար ի Քրիստոս հաւատոց...», ինչի մասին վկայում են «յիշատակարանք հաւատարիմ պատմագրաց», ինչպես նաեւ, հատկապես, Հովհաննես ավետարանիչը, եւ, այնուհետեւ, **Թովման** մեջ է բերում Հովհանի համապատասխան տունը՝

[27] Թովմայի Պատմության 2-րդ գրքի 1-ին գլխի մանրամասն աղբյուրագիտական քննությունը տե՛ս՝ Գր. Տեր-Պողոսեան, «Նկատողութիւններ Եղիշէի Պատմութեան վերաբերեալ», «Հանդէս Ամսօրեայ», Վիեննա, 1895, 5, էջ 129-133:

*«...էին ոմանք յեկեղց անտի հեթանոսաց, որք եկեալ էին յերուսաղէմ ի տօնն, զի երկիրպագանիցեն. որք եւ մատուցեալ առ Փիլիպպոս որ ի Բեթսայիդայն, ասէն՝ կամիմք զՅիսուս տեսանել»*[28], *որը հիմք ծառայեց պնդելու, թե իբր «ոմանք յեկեղց անտի հեթանոսաց» եղել են Աբգարի պատվիրակները: Նույն այդ վկայակոչմանը հանդիպում ենք Մով. Խոր. (II, 31), Եվս. Կես. (Եկեղեց. պատմ., I, 12) մոտ, ինչպես նաեւ Աբգար թագավորի եւ Աստծո խիտոնի մասին առասպելի սիրիական, հայկական, վրացական զանազան տարբերակներում: Այդ կապակցությամբ Ն. Մառը նկատում է. «Պատմական արժանահավատության տեսակետից մեր հուշարձանը այնքան էլ շատ չի շահել, ակնարկելով ավետարանական տները (Հով., 12, 20-21)»*[29]*:*

*Ակնհայտ է, որ նման վկայակոչումների նպատակն է հեղինակավոր աղբյուրի օգնությամբ հաստատել անվավեր փաստը, եւ միջնադարյան հեղինակները կանգ չէին առնում նույնիսկ Աստվածաշնչի բնագիրը խեղաթյուրելու առաջ:*

*

* *

*Պատմության առաջին գրքում, կատարելով իր առջեւ իշխան Գրիգոր-Դերենիկի կողմից դրված խնդիրը, Թովման ստեղծում է, ըստ որում համարյա թե դատարկ տեղում, Արծրունյաց տոհմի իշխանների ծագումնաբանությունը:*

*Որպես ելակետ նրան ծառայել են Մով. Խոր. վկայությունը, որ Արծրունիները սերում են ասորեստանյան թագավոր Սենեքերիմից*[30]*, եւ աստվածաշնչային ավանդույթը Սենեքերիմ թագավորի մասին*[31]*:*

*Առաջին հերթին Թովման պետք է հետամուտ լիներ Սենեքերիմի ծագումնաբանությանը, բացահայտեր նրա արմատները մինչեւ Նոյի որդիների ժամանակը, եւ այդ առումով նա դժվարությունների չի հանդիպել, որովհետեւ իր տրամադրության տակ ուներ Աստվածաշունչը՝ իր աստվածաշնչային հայրապետների ծագումնաբանական ցուցակներով հանդերձ, Եվս. Կես. Քրոնիկոնը, որը պարունակում էր նախաջրհեղեղային մարդկության եւ, հատկապես, Ասորեստանի պատմությունը ու ասորեստանյան թագավորների անվանացանկերը, եւ, վերջապես, Մով. Խոր. պատմությունը: Այնուհետեւ նա Սենեքերիմին եւ իր որդիներին անմիջականորեն պետք է կապեր Արծրունյաց տոհմի հետ, եւ*

---

[28] Թով. Արծ., էջ 76: Համտ. Յովհ. Դրասխ., ԺԲ, 20-21:

[29] Марр Н. Я, Хитон Господень в книжных легендах армянских, грузинских и сирийских. "Сб. статей учеников Бар. В. Розена", СПБ., 1897, с. 82-83.

[30] Տե՛ս՝ Պատմութիւն, I, 23:

[31] Դ Թագ., 19: 36-37:

այս խնդիրը լուծելիս նրա առջեւ ծառացան զգալի դժվարություններ, որովհետեւ վերջինիս մատչելի օտար աղբյուրներում անհրաժեշտ տեղեկությունները բացակայում էին, իսկ ինչ վերաբերում է հայկական աղբյուրներին՝ Փավստոս Բուզանդին, Ագաթանգեղոսին, Եղիշեին, Ղազար Փարպեցուն, Մով. Խոր., ապա նրանց գրվածքների մեջ թեկուզ պարունակվում էին Արծրունյաց իշխանների մասին շատ թե քիչ ընդարձակ տեղեկություններ, եւ Թովման օգտագործել է դրանք, հաճախակի ամբողջությամբ ընդգրկելով իր պատմածում, սակայն իր տեսակետից դրանք ամենեւին էլ բավարար չէին իր առջեւ ծառացած խնդիրները լուծելու համար: Թովմային անհրաժեշտ էր բազում դարերի միջով անցկացնել մի թել, որը կապեր Սենեքերիմին այն ժամանակների հետ, երբ հայտնվել են արժանահավատ տեղեկություններ Արծրունիների մասին, եւ ստեղծել Գրիգոր-Դերենիկ իշխանի նախնիների, իրենց գործերով եւ իմաստությամբ փառաբանված, մի պատկերասրահ:

Այդ խնդիրը Թովման լուծում է հետեւյալ կերպ: Ժամանակի այդ մեծ հատվածը նա բաժանում է մի քանի ժամանակաշրջանների, որոնք իրարից սահմանազատվում են իր տեսակետից կարեւոր որեւէ ճակատագրական իրադարձությունով: Այդ ժամանակաշրջաններից յուրաքանչյուրի համար նա հնարում է Արծրունյաց նախնիների անվանացանկեր, ընդ որում, ամեն ցանկում հիշատակված վերջին անձնավորությունը դուրս է գալիս համապատասխան ճակատագրական իրադարձության ժամանակակիցը, եւ հենց նրան էլ Թովման օժտում է տվյալ իրադրությանը համապատասխանող ճակատագրով եւ բնավորությամբ, նվիրելով նրանց շատ թե քիչ ընդարձակ հետաքրքիր նովելներ: Թովման հնարել է նման հինգ անվանացանկեր: Ի սկզբանե նկատենք, որ 4-5-րդ դդ. հայկական աղբյուրներում հիշատակված Արծրունիների ներկայացուցիչներից ոչ մեկին Թովման չի ընդգրկել իր անվանացանկերում, սակայն նրանք համարյա միշտ հանդես են գալիս իր պատմության համապատասխան տեղերում:

Ծագումնաբանության գիրքը Թովման սկսում է հայոց թագավոր Տիգրան Հայկազնի եւ նրա ժամանակակիցներ՝ պարսից թագավոր Կյուրոսի եւ մեդական թագավոր Աժդահակի ժամանակից, պատմելով, թե ինչպես Աժդահակի դեմ պատերազմելիս Տիգրանը գերի է վերցրել երկու մեդական արքայազներ. «...ոմանք ի զաւակէ Աժդահակայ ձերբակալ արարեալ, Տիգրանայ առեալ ածէ ի Հայս ...որոյ զփոյթ հպատակութեան ցուցեալ՝ կարգէ զնոսա ի գործ ծառայութեան, կրել արծուիս եւ բազէս. եւ ի գինարբուսն ի տեղի մատռուակութեան յառաջացուցեալ՝ ի գահ նախարարութեան ձգեալ կացուցանէ, եւ բնակեցուցանէ զնոսա ի գաւառն Աղբակ...» (I, 5): Թովման ուղղակիորեն չի ասում, որ այդ մեդական արքայազները Արծրունի իշխանների

նախնիներն են, սակայն այն հանգամանքը, որ նրանք «կրել են արծուիս[32] եւ բազես», եւ որ Տիգրանը բնակեցրել է նրանց Աղբակում Արծրունիների տոհմական տիրույթում, որոշակիորեն մատնանշում է այդ: Սակայն «... մինչեւ չեւ առ միմեանս հասեալ Տիգրան եւ Կիւրոս՝ յղէ Աժդահակ պատարագս Կիւրոսի եւ խոստանայ տալ նմա զտէրութիւնն զչորրորդ մասն Սենեքերիմանցն զկողմամբքն Նինուէի եւ զՏմորիս ամրոցաւն, որ ի նմա...» (I, 5):

Աժդահակի գաղտնի մտադրությունների մասին Տիգրանին հաղորդում են Սենեքերիմի որդիներ՝ Ադրամելեքն ու Սանասարը՝ Տիգրանի զորավար ոմն Քսերքսեսի միջոցով: Այդ անձնավորությունը հայտվում է **Թովմայի** պատմության բավական անսպասելի, առանց ակնհայտ կապ ունենալու նախորդ պատմածի հետ: Քիչ հետո պատմության ընթացքում հայտնվում է նաեւ նրա որդի Արշեզը: Բրոսսեն ենթադրում է, որ Քսերքսեսը ու Արշեզը մեդական արքայազներ են[33]: Թվում է, որ նրանց հնարավոր է նույնացնել վերոհիշյալ մեդական արքայազների հետ: Որպես հիմք ընդունելով Մովսես Խորենացու պատմածը Աժդահակի դեմ Տիգրանի պատերազմի մասին եւ, հատկապես, այն մասը, որտեղ խոսվում է, թե ինչպես Տիգրանը հաղթելով Աժդահակին, այնուհետեւ բնակեցնում է իր՝ ժամանակին Աժդահակին կնության տված քրոջ՝ Տիգրանուհուն մայրաքաղաք Տիգրանակերտում, իսկ վերջինիս կնոջը՝ Անույշին, իր ծառաներով եւ մեդական գերիներով՝ Մասիս լեռան ստորոտում, **Թովման** իր սեղծագործական մտահղացմանը համաձայն փոփոխում է այն, դեն նետելով պատմվածքից Անույշին եւ նրա փոխարեն Մասիս լեռան ստորոտում բնակեցնելով Տիգրանուհուն, իր ծառաների եւ մեդական գերիների հետ[34]: Հենց այդ գերիներից էլ առաջ են գալիս վերոհիշյալ անանուն արքայազները՝ Աժդահակի որդիները: Քսերքսեսի եւ Արշեզի մասին **Թովման** հնարում է մի պատմվածք, որտեղ նրանց ներկայացնում է որպես տաղանդավոր, քաջարի

[32] Արծրունյաց տոհմի անունը «արծիվ» անվան հետ առաջին անգամ կապել է Մով. Խոր. (II, 7):

[33] Brosset M. Collection d'Historiens Armeniens. T. Ardzrouni, X-es. Histoire des Ardzrouni. par M. Brosset. T. I, S. Petersburg, 1874, p. 33, com. 2.

[34] Նույն ձեւով Թովման փոփոխում է նաեւ, օրինակ, Մով. Խոր. պատմությունը ոմն Տուրի մասին, որը լրտեսություն է անում Երվանդ թագավորի տնից ապագա Արտաշես թագավորի դայակին՝ Սմբատին, տեղեկություններ ուղարկելով, եւ այդ պատճառով սպանվեց Երվանդի կողմից: Արտաշեսը թագավոր դառնալուց հետո, Տուրի ծառայության համար նրա 15 որդիներին նախարարական պատիվ է շնորհում, կոչելով ցեղը նրանց հոր անունով՝ Տիրունի (I, 48): Թովման (I, 7) բաց չի թողնում մի հնարավորություն եւս ներկայացնելու Արծրունիներից մեկին՝ Վաչեի որդի Սահակին որպես Արտաշես թագավորի փրկության մասնակից եւ Տուրին փոխարինում է Սահակով, որը նույնպես հնարած անձնավորություն է:

զորավարների, որոնց շնորհիվ Տիգրանը եւ Կյուրոսը հաղթանակ են տանում Աժդահակի, ինչպես նաեւ լյուդացոց թագավոր Կրեսոսի դեմ պատերազմելիս: Այդ երկու զորավարներին Թովման կապում է նույնիսկ աստվածաշնչյան պատմության հետ, վերագրելով նրանց շատ կարեւոր դեր այնպիսի մի իրադարձությունում, ինչպիսին էր Աստվածաշնչում մանրամասն նկարագրված հրեաների վերադարձը բաբելոնյան գերությունից: Համաձայն Թովմայի, Կյուրոսը հենց Քսերքսեսին է հանձնարարել գերի հրեաներին տանել Երուսաղեմ, տեղ հասցնել ոսկե եւ արծաթե սպասքները, որ ժամանակին դուրս է բերել այնտեղից Նաբուգոդոնոսորը, եւ միայն դրանից հետո Երուսաղեմում Քսերքսեսը հանձնում է իր լիազորությունները Զորոբաբելին եւ այնուհետեւ վերադառնում Կյուրոսի արքունիք: Իր հերոսի ճակատագիրն աստվածաշնչյան պատմության հետ կապելու հնարավորությունը Թովման տեսել է հենց Աստվածաշնչի բնագրում: Եզր. Ա գրքում ասվում է. «Եւ բերեալ զայն ամենայն Կիւրոս թագաւոր Պարսից ի ձեռն Միթրադատայ գանձաւորի, եւ համարեալ ետ ցՍամանասար» (տարբնթ. ցՍասաբասար) (8): Հինգերորդ գլխում նույն կոնտեքստում կրկին հիշատակվում է Սամանասարը. «Եւ առաջնում ... Կիւրոս թագաւոր հրամայեաց շինել զտունս զայս Տեառն Աստուծոյ (13), ... առեալ զայն Կիւրոսի թագաւորի եւ ետ ցՍամանասար գանձաւոր (տարբնթ. էջ 512-Գ եւ ետ ցՍասաբացար), զոր էր կարգել հրամանատար»: «Յայնժամ Սամանասար (Սասաբասար) եկն եւ արկ զհիմն տաճարիս Տեառն Աստուծոյ յԵրուսաղէմ»: 2-րդ գլխում, որտեղ թվարկվում են Բաբելոնից Երուսաղեմ վերադարձած հրեաների սերունդները, նրանց ելքի ողջ ղեկավարությունը վերագրվում է միմիայն Զորոբաբելին: Աստվածաշնչի գրաբար եւ աշխարհաբար, ինչպես նաեւ ռուսերեն հրատարակությունների մեծամասնությունում Սասաբասարի եւ Զորոբաբելի անունները կողք-կողքի չեն հիշատակվում, ինչը առիթ է տվել մի շարք ուսումնասիրողների ենթադրելու, որ խոսքը միեւնույն անձնավորության մասին է, սակայն, ոմանք էլ համարում են, որ դրանք տարբեր անձնավորություններ են[35]: Աստվածաշնչի գրաբար հրատարակություններից մեկում[36] Եզրասի Ա գրքի 6-րդ գլխում կարդում ենք. «Յառաջնում ամի թագաւորութեան Կիւրոսի ի Բաբելոն, գրեաց արքայ Կիւրոսն եւ հրամայեաց շինել զտաճարս զայն, եւ զամենայն կահ եւ սպաս տաճարին զոսկեղէն եւ զարծաթեղէն՝ զոր առ Նաբուգոդոնոսոր արքայի տաճարէն Տեառն Երուսաղեմէ եւ եդ ի պահեստ ի տան կռոցն բաբելացւոց, դարձեալ Կիւրոս առ ի տանէ կռոցն բաբելացւոց, եւ

[35] Մանրամասները տե՛ս՝ Толковая Библия или комментарий на все книги Св. Писания Ветхого и Нового Завета в 3-х томах. Стокгольм, 1987.

[36] Գիրք Աստուածաշունչ հին եւ նոր կտակարանաց. ի Վենետիկ, ի վանս Մխիթարեանց ի սուրբ Ղազար, 1860:

եւ զՋորոբաբել եւ զՍամանասար[37], եւ հրամայեաց նոցա բերել եւ դնել զկահս եւ զսպասս ի տաճարին Տեառն յԵրուսաղէմ. եւ տաճարն Տեառն հրամայեաց շինել ի տեղւոջ իւրում. յայնժամ Սամանասար եդեալ յԵրուսաղէմ արկ հիմունս տաճարիս այսորիկ»: Ահա այս Սամանասարին Թովման հնարավոր համարեց փոխարինել Արծրունիների՝ իր հնարած նախնիներից մեկի՝ Քսերքսեսի անվամբ:

Հենվելով այն հանգամանքի վրա, որ Մով. Խոր. իր վերոհիշյալ տեղեկությունը Սենեքերիմի եւ նրա որդիների մասին, որպես Արծրունիների նախնիների, տեղադրում է Տիգրան Հայկազնի թագավորությանը նվիրված պատմվածքը նախորդող գլխում (I, 23), Թովման իր քննության առարկա պատմությունում ներկայացնում է նաեւ Ադրամելիքին ու Սանասարին, որոնց կապում է ընդհանուր շահերով Քսերքսեսի եւ Արշեզի հետ՝ վերջինները իրենց զինվորական վաստակի համար ստացել են որպես պարգեւ «... զՏմորիս ամրոցաւն եւ զգետափնեայն Նինուէի»[38]: Այսպիսով, Թովմայի սույն պատմվածքում կարծես նշագծվում են Արծրունյաց տոհմի երկու ճյուղերը՝ մեդականը եւ ասորեստանյանը:

Այդ առաջին պատմվածքը, որտեղ Թովման սկսում է Արծրունիների ծագումնաբանությունը, ավարտվում է առաջին անվանացանկով, որը ընդգրկում է Տիգրան Հայկազնին հաջորդող շրջանը մինչեւ Ալեքսանդր Մակեդոնացին (336-323) ներառյալ:

Առաջին անվանացանկի վերջին հիշատակված անձնավորությունն է Ալեքսանդր Մակեդոնացու ժամանակակից Ասուդը: Օգտվելով Մով. Խոր.՝ Տիգրանի սերունդների անվանացանկի վերջում տեղադրված Վահեին վերաբերող թռուցիկ դիտողությունից, թե ապստամբելով Մակեդոնացու դեմ մեռնում է նրա ձեռքով[39], Թովման Վահեին փոխարինում է Ասուդով եւ նրան է ներկայացնում որպես Ալեքսանդրի ախոյան, այնուհետեւ, զարգացնելով պատմվածքի սյուժեն, նա օգտվում է Ալեքսանդր Մակեդոնացու Պատմության այն հատվածից, որտեղ նկարագրվում է, թե ինչպես ոմն պարսիկ, իրեն ձեւացնելով մակեդոնացի, գաղտագողի մուտք է գործում նրա բանակը եւ հարձակվում Ալեքսանդրի վրա. վերջինս հիացած պարսիկի խիզախությամբ, ազատ է

---

[37] Աստվածաշնչի գրաբարյան ձեռագրերում այդ անունը հանդիպում է նաեւ Սաղմանասար եւ Սասբացար (Շեշբացար) ձեւերով:

[38] Տմորիքը իր համանուն ամրոցով 5-րդ դարում, որպես տոհմական տիրույթ, պատկանակում էր 451 թ. Վարդանանց պատերազմի մասնակից Ներշապուհ Արծրունուն, որին հիշատակում են իրենց գործերում Եղիշեն եւ Ղազար Փարպեցին եւ որի պատմական վավերականությունը կասկածներ չի հարուցում:

[39] Տե՛ս I, 31:

արձակում նրան, որպես օրինակ[40] բերելով նրան իր զորավարներին: Գերի ընկած Ասուդի հետագա ճակատագիրը հիշեցնում է աստվածաշնչյան Հովսեփին: Աղեքսանդրի զորավարներ Պտղոմեոսը եւ Սելեւկիոսը թագավորից խնդրեցին Ասուդին իրենց պարգեւել, որից հետո Պտղոմեոսը նրան «... տայ տանել յեգիպտոս ... եւ կարգել նմա ռոճիկս առատապէս ... տալով ի ձեռս նորա զբոլոր իշխանութիւն Եգիպտոսի եւ Հնդկաց»: Իսկ Ասուդը թեպետ եւ «... շքեղութեամբ ճոխանայր եգիպտական եւ հնդկային հարստութեամբն՝ այլ յիշելով զբուն իւր սեպհական թագաւորութիւն Ասորեստանի՝ ոչ հաճոյանայր կեալ եգիպտացի գահակալութեամբ... Կեցեալ անդ ամս բազումս մեռանի յեգիպտոս եւ կայ անդէն» (I, 6): Այսպես Թովմայի ստեղծած Ասուդի կերպարում միահյուսվել են Խորենացու Վահեի, «Աղեքսանդրի պատմության» ոմն պարսիկի եւ աստվածաշնչյան Հովսեփի ճակատագրերը:

Երկրորդ անվանացանկի օգնությամբ Թովման կամուրջ է գցում Աղեքսանդրի ժամանակից մինչեւ Արշակունյաց հարստության հիմնադիր՝ պարթեւական թագավոր Արշակ Ա (247-227 թ. մ. թ. ա.) եւ նրա եղբոր՝ առասպելական հայոց թագավոր Վաղարշակի ժամանակը, որը «... յնու բարեկարգութեամբ զաղմկեալ եւ զշփոթեալ երկիրս Հայոց: Եւ նախարարութիւնս յօրինէ, յանուն եւ ի բարձ եւ ի գահ յառաջ մատուցեալ»: Երկրորդ ցուցակի հերոսն է դառնում այն փակող Կյուրոսը, որն իր անունն է ստացել ի հիշատակ իր նախնիի՝ Քսերքսեսի եւ վերջինիս թագավոր Կյուրոսի հետ բարեկամության: Այդ Կյուրոսը «... գրէթէ ...զանցուցանէր զքաջութեամբ...» Արշակ Պարթեւին եւ ցուցաբերելով «զհանճարեղութեանն խոհեմութիւն», արժանացավ նրանից գահի եւ պատվի: Հայոց թագավոր Վաղարշակը «խնդրէ զնա ... եւ առնու ածէ զնա ընդ իւր ի Հայս, եւ անուանէ զնա Արծրունի»: Թովման օգտագործում է, փոքր-ինչ փոխելով, Մովսես Խորենացու՝ Վաղարշակ թագավորի գործունեության մասին պատմությունը (II, 7), որպեսզի իր հնարած Աժդահակի հետնորդ Կյուրոսի միջոցով ցույց տա՝ երբ եւ ինչ հանգամանքներում Արծրունի իշխանները իրենց վայել գիրք են գրավել

[40] «Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ»: Հայկական խմբագրություններ: Աշխատասիրությամբ Հասմիկ Սիմոնյանի, Եր., 1979, էջ 396-397: Ասուդի պատմությունը գրավել է Հ. Տաշյանի ուշադրությունը, որը իր Կեղծ Կալլիսթենեսին նվիրված ուսումնասիրությունում (էջ 41) նշում է Թովմայի՝ Ասուդի մասին պատմածի նմանությունը Աղեքսանդրի պատմության որոշ հանգամանքներին, ընդ որում, նրան ոչ Ասուդի անձնավորության վավերականությունը, ոչ էլ Արծրունյաց տոհմին նրա պատկանելությունը չէին հետաքրքրում (տե՛ս՝ «Ուսումնասիրութիւնք ստոյն Կալիսթենեայ վարուց Աղեքսանդրի, Վիեննա, 1892, էջ 41): Հ. Աճառյանը ներկայացնելով Թովմայի տեղեկությունները Ասուդի մասին, այնուհետեւ կտրուկ ամփոփում է «կեղծիք» (Անձն. բառարան, I, էջ 229-230):

Հայաստանի ֆեոդալական հիերարխիայում եւ որտեղից է երեւան եկել Արծրունի ազգանունը:

Երրորդ անվանացանկը մեզ փոխադրում է առասպելական Արշամ թագավորի, նույնքան առասպելական Աբգար թագավորի՝ Քրիստոսի ժամանակակցի հոր ժամանակը: Այդ անվանացանկը փակում է Ջաջուրը, որը դառնում է Թովմայի հնարած հաջորդ պատմության հերոսը, եւ որում մեր հեղինակի նպատակն է ապացուցել Արծրունիների եւ Բագրատունիների ազգակցական կապերի վաղեմությունը: Այդ պատմվածքի հիմքում ընկած է Մով. Խոր. պատմությունը Ենանոս (Անիանոս) Բագրատունու մասին, որը շնորհազուրկ է լինում թագավորից: Զրկելով Ենանոսին բոլոր պատիվներից, թագավորը բանտ է դնում նրան, սպառնալով նրան, եթե չհրաժարվի հրեական հավատքից, կախաղան բարձրացնել, իսկ նրա ողջ տոհմը ոչնչացնել: Մինչեւ այդ տեղը Թովման կրկնում է Մով. Խոր., սակայն շարունակությունը տալիս է իր մեկնաբանությամբ: Ենանոսին բարձրացնում են կախաղան, բայց եւ այնպես Ջաջուրը, խնդրելով նրան եւ ողջ նրա տոհմը թագավորից, հասցնում է հանել Ենանոսին կախաղանից դեռեւս կենդանի վիճակում եւ փոխադրելով նրան ու ողջ նրա տոհմը Հայաստան, փրկում է նրանց ոչնչացումից եւ իր Սահակ որդուն ամուսնացնում Ենանոսի դստեր՝ Սմբատուհու հետ[41]:

«Այս առաջին խնամանալ եղեւ ընդ միմեանց,- գրում է Թովման,- Բագրատունեաց եւ Արծրունեաց»: Այսպիսով, Թովման առաջին երեք անվանացանկերի օգնությամբ ապացուցելով Արծրունիների ազնվատոհմությունը, Վաղարշակ թագավորից հաստատված բարձի եւ գահի օրինականությունն ու Բագրատունիների հետ իրենց ազգակցության վաղեմությունը, հիմք է կառուցում Հայոց նախարարական տների մեջ առաջնային տեղ գրավելու եւ հայոց միապետի գահը ստանալու Արծրունյաց իշխանների հավակնությունների համար:

---

[41] Այս պատմությունը բավականաչափ բնորոշ օրինակ է, թե ինչպես միտումնավոր նպատակներից ելնելով՝ Թովման մշակում է իր աղբյուրների տվյալները: Հայտնի է, որ դինաստիական ամուսնությունները Արծրունիների եւ Բագրատունիների միջեւ սկիզբ են առել 9-րդ դ., երբ Աշոտ Մսակերի դուստր Հռիփսիմեն կնության էր տված Համազասպ (Համզա) Արծրունուն: Հաջորդ ամուսնությունը կայացավ Գրիգոր-Դերենիկ Արծրունու եւ ապագա թագավոր Աշոտ I-ի դստեր՝ Սոփիի միջեւ: Վերջապես, Գագիկ Արծրունու առաջին ամուսնությունը եղել է Սմբատ I-ի եղբոր՝ Շապուհի դստեր հետ: Ակնհայտ է, որ Թովման, ձեռքի տակ չունենալով Արծրունիների եւ Բագրատունիների ազգակցական կապերի վաղեմությունը հաստատող աղբյուրներ, ինքը ստեղծեց այդպիսին, հետ տանելով 9-րդ դ. առաջացած ամուսնական կապերը Արծրունիների եւ Բագրատունիների միջեւ Արշամ թագավորի ժամանակները, հաղորդելով այդ կապերին իր տեսակետից անհրաժեշտ վաղեմություն, միաժամանակ, ներկայացնելով նաեւ Արծրունիներին Բագրատունյաց տոհմը ոչնչացնելուց փրկարարների դերում:

*Արշամ թագավորին հաջորդում է Աբգարը, որի մասին հորինել են բազմաթիվ առասպելներ ասորական, հայկական եւ վրացական մատենագրություններում, եւ դրանց լիակատար տարբերակներից մեկը տալիս է Մով. Խոր., Աբգարին ներկայացնելով որպես Հայոց թագավոր (I, 26-33): Առասպելը Աբգարին վերագրում է առաջնություն մյուս հեթանոսական թագավորների մեջ քրիստոնեությունը ընդունելու հարցում, ինչպես նաեւ նամակագրություն Հիսուս Քրիստոսի հետ, որն ուղարկել է Աբգարին իր անձեռագործ պատկերը եւ Թադեւոս առաքյալի միջոցով բուժել նրան ծանր հիվանդությունից: **Թովման**, իհարկե, չէր կարող ձեռքից բաց թողնել Արծրունիներից եւս մեկին որպես Քրիստոսի եւ Աբգարի ժամանակակից ներկայացնելու հնարավորությունը: Տվյալ դեպքում նոր անվանացանկ հնարելու անհրաժեշտությունը վերանում էր, անհրաժեշտ էր միայն գտնել Ջաջուռի հաջորդին, որին եւ գտավ Մով. Խոր. պատմությունում (II, 29), որտեղ վերջինս պատմում է, թե ինչպես Աբգարը ուղարկում է Հերովդեսի դեմ պատերազմող Պետրայի թագավոր Արետին օգնական զորք՝ ոմն Խոսրան Արծրունու գլխավորությամբ: Այս Խոսրան Արծրունուն, որը ջախջախիչ պարտության էր մատնել Հերովդեսին, **Թովման** վեր է ածել Խուրանի. վերջինիս նա ներկայացնում է, որպես «զայր իմաստուն եւ քաջամարտիկ, կորովի յաղեղն եւ ի զէն եւ յասպազէն...», եւ ամենակարեւորը, որը առաջինն էր հայոց նախարարներից հավատացել Քրիստոսին[42]: Ճիշտ այնպես, ինչպես Աբգարը հեթանոս թագավորներից առաջինը հավատաց Քրիստոսին:*

***Թովման** Խուրանին մի կողմից օժտել է քաջարի ռազմիկի հատկանիշներով, որին ռազմական սխրագործությունների համար Տիբերիոս կայսրը պարգեւատրել է «ծիրանեօք եւ բրաբիոնաւ», մյուս կողմից՝ քրիստոնյա ճգնավորի, որն իր կյանքի վերջին տարիները անց է կացրել Երուսաղեմում Աբգար թագավորի տիկնոջ Հեղինեի միջավայրում. «... եւ առեալ ոսկի զտիկնոջն եւ գիր՝ գնաց յԵգիպտոս գնել ցորեան յաւուրս սովոյն որ եղեւ առ Կղոդեաւ բաշխել զայն որբոց եւ այրեաց» (I, 6)[43]:*

---

42 Գ. Խալաթյանցը այդ կապակցությամբ գրում է. «Հետաքրքիր է նկատել, թե ինչպես Խոսրանի մասին (Մով. Խոր.) ի միջի այլոց արված դիտողության հիման վրա Թովման մշակել է այդ իշխանի հետագա բավականաչափ ֆանտաստիկ պատմությունը»: ("Армянские Аршакиды". Москва, 1903, с. 98): Մով. Խոր. իր հերթին այդ տեղեկությունը քաղել է Լաբուբնայից, ըստ որի Աբգար թագավորը օգնություն է ուղարկում մի գունդ զինվորներ «ոմն Խոսրանի գլխավորությամբ» (Լաբուբնա, Թուղթ Աբգարու թագավորի Եդեսիայի քաղաքի: Եդեսիա, 1868, էջ 29): Խոսրան =Xesron (Հ. Աճառյան, Անձ. ան. բառ., II, էջ 528):

43 Թովման Հեղինե թագուհու մասին տեղեկությունները փոխ է առնում Մով. Խոր. «Այս Հեղինէ զարդարեալ հաւատովք, որպէս եւ հայր իւր զԱբգար, ոչ հանդուրժեաց բնակել ի մէջ կռապաշտիցն, այլ չոգաւ յԵրուսաղէմ յաւուրս Կղաւդեայ, ի սովին՝ զոր

Որպես պատմական ֆոն օգտագործելով Մով. Խոր. Պատմության 2-րդ գրքի 37-47 եւ 60-րդ գլուխները, Թովման այնուհետեւ ներկայացնում է Խուրանի որդու՝ Վաչեի եւ վերջինիս որդու՝ Սահակի, ինչպես նաեւ Խուրանի եղբոր՝ Արշավիրի եւ եղբորորդու՝ Համամի պատմությունը, չնայած Խուրանի հետնորդներին Թովման չի ներկայացնում հատուկ անվանացանկով, սակայն այդպիսին հեշտությամբ կարող է կազմել ինքը՝ ընթերցողը: Խուրան, Արշավիր, Վաչե, Սահակ, Աշոտ, Համամ[44]: Նրանք բոլորն էլ առասպելական Արտաշես թագավորի ժամանակակիցներն են եւ ի տարբերություն նախորդ երեք ցանկերում հիշատակվածների, նրանցից յուրաքանչյուրի մասին Թովման հնարում է շատ թե քիչ ընդարձակ պատմություն: Նրա նպատակն էր ցույց տալ նախ, որ Արծրունիները ոչ պակաս դեր են խաղացել Երվանդ թագավորի հետապնդումներից մանուկ Արտաշեսին փրկելու գործում, այնուհետեւ, որ Արտաշեսը հաստատեց Արծրունիների իշխանական իրավունքը Աղբակ գավառի նկատմամբ եւ Համամի «Նախնեացն ջան եւ վաստակ ... Համամայ յառաջ մատուցեալ ի գահ եւ ի բարձ հայրենեացն ձգեալ զնա՝ ժառանգեցուցանէ զերկիրն Աղբակ...»:

Թովմայի հաջորդ՝ չորրորդ անվանացանկը, ավարտվում է Բաբգեն անունով: Բաբգենը՝ Տիգրան վերջինի որդու՝ Վաղարշակ թագավորի ժամանակակիցն է եւ վերջինիս «հիւսիսայինն Հազրաց» դեմ վարած պատերազմի

---

մարգարէացաւն Ագաբոս, եւ տուեալ զամենայն գանձս իւր յեգիպտոս՝ գնեաց ցորեան բազում յոյժ եւ բաշխեաց ամենայն կարօտելոց. որում եւ վկայէ Յովսեպոս» (II, 35): «Զայսու ժամանակաւ,- գրում է Եվս. Կես. - եւ սով մեծ լինել ի Հրէաստանի, ասէ, յորոս եւ դշխոյն Հեղինէ գնեաց ցորեան յեգիպտոսէ բազում ոսկոյ եւ բաշխեաց կարօտելոց: Եւ միաբան գտանես զբանս ընդ Գործոց Առաքելոցն, յորում գրեալ է այսպես. Բայց յաշակերտաց անտի՝ որ էին յԱնտիոք քաղաքի, որպէս զիարդ կարող էր, մի մի ի նոցանէն ընտրեցին տալ տանել սպաս պաշտաման աղքատացն որ էին յԵրուսաղէմ եւ արարին այնպէս, եւ ետուն տանել առ երիցունսն ի ձեռն Պօղոսի եւ Բառնաբայ» (Եկեղեցական պատմութիւն, Ա, 12): իսկ «Գործ Առաքելոց» -ում (11: 28-30) գրված է. «Յարուցեալ մի ոմն ի նոցանէ՝ անուն Ագաբոս, նշանակեաց հոգւովն՝ սով մեծ լինել ընդ ամենայն աշխարհ, որ եղեւ առ Կղաւդեաւ: Բայց աշակերտաց անտի՝ որպէս զիարդ կարող ոք էր, իւրաքանչիւր ոք ի նոցանէ որոշեցին առաքել ի պէտս եղբարցն՝ որ բնակեալ էին ի Հրէաստանի զոր եւ արարին իսկ՝ առաքեալ առ երիցունսն ի ձեռն Բառնաբայ եւ Սաւղոսի»: Ինչպես Մով. Խոր., այնպես էլ Եվս. Կես. որպես աղբյուր օգտագործել են Լաբուբնայի «Թուղթ Աբգարու թագաւորի» (Տե՛ս՝ Մատենագիրություն, I, էջ 3):

[44] Ինչպես նշում է Հր. Աճառյանը (Անձնանվ. բառ., III, էջ 23), հնարավոր չէ, որ 2-րդ դարում հայերը օգտագործած լինեին արաբական Hamam անունը: Ի դեպ, ըստ իր սովորության, Թովման փոխարինել նրանով Մով. Խորենացու Աբեղյանների տոհմի նախապետ ոմն Աբեղոյին, մի ճարպիկ շողոքորթ եւ հաճոյախոս մարդու. բնավորության նման գծերով Թովման օժտել է նաեւ Համամին՝ «սէգ եւ ամբարտաւան, յոյլ եւ թոյլ առ պատերազմի գործ...», (I, 8):

*ժամանակիցը*[45]*: Բարգենը Աշոտ Բագրատունու հետ միասին (երկուսի մասին էլ եւս վկայում է միայն Թովման), փրկվելով, Թագավորի մահվան գույժը բերել, հասցրել են Հայաստան: Եվ քանի որ այն, ինչ կատարվել է Արծրունյաց տոհմի հետ հետագայում, Թովմային մնացել է անհայտ, ապա «... զազգին շարս ըստ գիւտի աշխատութեանն բաւական համարեցաք յառաջ վարել մինչ ի Թագաւորել Տրդատայ եւ սկիզբն լինել լուսաւորութեանն Հայոց աշխարհիս ի ձեռն մեծի Գրիգորի Լուսաւորչին» (Ա, 9): Նրա քննական աշխատանքի արդյունքն էր հինգերորդ եւ վերջին անվանացանկը, որի օգնությամբ նա անցնում է Հայաստանում քրիստոնեության տարածման եւ պետական կրոնի վերածման կարեւորագույն շրջանը: Նախորդ ցուցակների նման, այստեղ էլ հերոսի դերում հանդես է գալիս ցուցակի վերջում հիշատակված Տիրոցը, որը իր բնավորության հատկանիշներով լիովին համապատասխանում է քրիստոնեության ընդունման եւ սուրբ Գրիգորի լուսավորչական գործունեության ժամանակին՝ «...այր հեզ, խոհական, խորհրդական, համեստ ի բանս, համեստ ի նայեցուածս, որ ոչ բազմաց քան եթէ միոյն, այսինքն Քրիստոսի՝ զինքն ծանօթ ջանայր կացուցանել: Քանզի եւ ի ժամու անդ, յորում զմեծն Գրիգոր առեալ տանէին ի քաղաքն Կեսարացւոց ձեռնադրել զնա ի քահանայութիւն, ի լուսարար վարդապետութիւն աշխարհիս Հայոց՝ էր ընդ մեծ նախարարսն երթեալ եւ Տիրոց»: Թվարկելով իր Պատմությունում սբ. Գրիգորին ուղեկցող նախարարական տոհմերի ներկայացուցիչներին, Ագաթանգեղոսը 16-րդ տեղում հիշատակում է Արծրունի իշխանին*[46]*, ինչի հիման վրա էլ, ըստ երեւույթին, Թովման ստեղծել է հանգամանքներին համապատասխանող Տիրոցի վարքագրական կերպարը. նա «... ոչ յառաջանայր ի բարձր նախագահ ճոխանալ երեւելեօքս եւ լքանելեօքս, որբոյ Աւետարանին հետազօտեալ կրթականին՝ մի բազմել յառաջին բարձին, ոչ եթէ ոչ ունէր նազելի եւ բարձրագահ պատիւ ի մէջ մեծ նախարարութեանց Հայոց, զի ո՞վ ոք այլ ճոխ քան զՍենեքերիմայսն, զոր համարձակախօսն Եսայիաս հրապարակէ առ Խորայէլեան զարմն զօրայս մեծափառութիւն. այլ եւ Մակեդոնացին Աղեքսանդրոս ոչ սակաւ գրուաթեօք արձանս գրէ ի մատեանս դիւանապահ աւանդութիւնս զօրայս մեծափառ գլխաւորութիւն» (Ι, 10):*

*Թովմայի Պատմության առաջին գրքում Տիրոցը վերջինն է իր ստեղծած կերպարներից, առաջին գրքի 10-րդ գլխի շարունակությունում եւ վերջին՝ 11-րդ գլխում, ընդհուպ մինչեւ սբ. Սահակի եւ սբ.Մեսրոպի մահը, Թովման բավարարվում է, աննշան բացառությամբ, Արծրունիներին վերաբերվող այն տեղե-*

[45] Տե՛ս՝ Մով. Խոր., II, 65:
[46] Պատմութիւն Հայոց. Տփղիս, 1909, # 795, 796, էջ 414-415:

*կություններով, որոնք պարունակվում են Փավստոս Բուզանդի, Մովսես Խորենացու, Ղազար Փարպեցու գործերում (Տավասպ Արծրունի, Մեհրուժան Արծրունի, Աղան եւ այլն):*

*Պատմության վերջին՝ 11-րդ գլուխը ավարտվում է հետեւյալ նախադասությամբ. «Կատարեցաւ Դպրութիւն առաջին Պատմութեան Հայոց ըստ ազգաբանութեան Արծրուեաց սեռի», սակայն բովանդակության եւ աղբյուրների մշակման ու ներկայացման տեսակետից Արծրունիների ծագումնաբանության գրքի մեջ պետք է մտնեին նաեւ երկրորդ գրքի առաջին երկու գլուխները: Առաջին գլխում, ուր խոսքը վերաբերում է 451 թ. Վարդանանց պատերազմի իրադարձություններին, սպասելի էր որպես աղբյուր[47] Եղիշեի գործը, սակայն Թովման, ինչպես նաեւ Հովհ. Դրասխ., նախընտրել է օգտվել մի ժողովրդական ավանդույթի անվավեր տվյալներից: Սույն ավանդույթից օգտվել են նաեւ Վարդանը եւ Ստեփանոս Օրբելյանը: Հովհ. Դրասխ. լինելով Մամիկոնյան իշխանների բազմադարյան ախոյանների՝ Բագրատունյաց տոհմի ջերմեռանդ ջատագովը, չի հիշատակում Եղիշեին, որի աշխատությունից այսուհանդերձ քաղել է բազմաթիվ գեղեցիկ արտահայտություններ, որովհետեւ նա Մամիկոնյանների պատմիչ էր[48]: Թովմայի դեպքում նման պատճառաբանությունը բացակայում է, քանի որ Մամիկոնյանները 9-րդ դարում քաղաքական ասպարեզում այլեւս գոյություն չունեին եւ հետեւաբար չեն եղել Արծրունիների ախոյաններ: Սակայն մնում է մեկ այլ կարեւոր հանգամանք. Թեպետ Եղիշեի գործում Արծրունյաց տոհմի ներկայացուցիչները բազմիցս են հիշատակվում, սակայն նրանք բոլորովին կորչում են այն փառքի լուսապսակի ճաճանչներում, որով Եղիշեն օժտել է սբ. Վարդան Մամիկոնյանին: Մինչդեռ Թովմային ցանկալի էր, որ վերջինիս կողքին կանգնած լիներ նրան ոչնչով չզիջող Արծրունյաց տոհմի ներկայացուցիչ: Այդպիսի դրական հերոսի նա պատկերում է ի դեմս իր իսկ հնարած Վահան Արծրունու[49], որին 451 թ.*

---

[47] Այդ գլխի աղբյուրագիտական մանրամասն վերլուծումը տե՛ս՝ Գր. Տէր-Պօղոսեան, Նկատողութիւններ Եղիշէի պատմութեան վերաբերեալ, «Հանդէս ամսօրեայ», (Վիեննա, 1896, 5):

[48] Ճիշտ նույն ձեւով Հովհ. Դրասխ. իր Պատմության 12-րդ գլխում համարյա բառացի մեջ բերելով սբ. Ներսես Պարթեւի համառոտ տարբերակը, բաց է թողնում Մամիկոնյաններին վերաբերող բոլոր հատվածները: (Տե՛ս՝ Иованнес Драсханакертци. История Армении. Перевод с древнеармского, вступительная статья и комментарий М. О. Дарбинян-Меликян, Ер., 1986, с. 266, прим. 3 к гл. XII).

[49] Թովմայի հնարած Վահան Արծրունուն առաջին անգամ հանդիպում ենք 1-ին գրքի 6-րդ գլխում, որտեղ նա հանդես է գալիս որպես Մամբրեի անվավեր գործի նույնման անվավեր պատվիրատու. «Այս Վահանս, զոր յիշեցաք, - գրում է Թովման, - այն Վահան է, զոր բազատրեցուցին նախարարք Հայոց յաւուրս սրբոյ Վարդանայ...»:

պատերազմի նախօրեին հայոց նախարարները միտք հղացան թագավոր կարգելու, սակայն հետո, ինչ-ինչ պատճառներով փոխելով մտադրությունը, որոշեցին ընտրել Վարդան Մամիկոնյանին: Վահանը ազնվորեն միացավ նախարարների այդ որոշմանը եւ, երբ սկսվեց պատերազմը պարսիկների դեմ, նա որպես Վարդանի մտերիմ զինակիցը «խոյակապ եւ յականաւոր քաջամարտութեամբ ընդ սրբոյն Վարդանայ ճակատ առ ճակատ վարեալ զպատերազմն...»: Իսկ երբ պարսիկների զինված ջոկատը շրջապատում է սբ. Վարդանին, «... քաջն Վահան Արծրունի ընդ նմա նիզակակցեալ՝ մեռանին ի միասին քաջքն եւ ընտիրքն, մեծ նահատակք Վարդան եւ Վահան...» (I, 6):

Թե ինչու այդ մասին ոչինչ չի ասվում Եղիշեի գրքում հարցը կանխելու համար **Թովման** 2-րդ գլխում հնարում է պատմություն, իբր նեստորական Բարծուման, որը այդ նույն ժամանակ փորձել էր գործունեություն ծավալել Վասպուրականի հարավային շրջաններում, սակայն վտարվել է այնտեղից Տմորիք բերդի տիրոջ՝ Ներշապուհ Արծրունու կողմից, խնդրել էր Եղիշեից իր երկի ձեռագիրը եւ այնտեղից դեն նետել Արծրունիներին եւ, հատկապես, Վահանին վերաբերող բոլոր տեղեկությունները[50]: Նման միջադեպի հանդիպում ենք նաեւ Մով. Խոր. մոտ, որը Հայկի ծագումնաբանության կապակցությամբ գրում է. «Եւ զայս մեզ Արիւդենոս յիւրում առաջնում առանձնականի իմն մանր ազգաբանութեան ասէ. զոր աստ ուրեմն յետոյ ոմանք բարձին» (Ա, 21): Ըստ երեւույթին հենց սույն հատվածն է հուշել **Թովմային** վարվել նույն ձեւով եւ այս դեպքում:

Այսպիսով, 2-րդ գրքի առաջին երկու գլուխներում մենք տեսնում ենք նույն այն միտումներն ու ձեւերը, որ բնորոշ են առաջին գրքին: Ինչպես ասած, հենց այս երկու գլուխներով է ավարտվում **Թովմայի** աշխատության այն մասը, որը պետք է անվանել «Դպրութիւն առաջին Պատմութեան Հայոց ըստ ազգաբանութեան Արծրունեաց սեռի»: Դա ճիշտ կլինի ինչպես բովանդակության, այնպես էլ նյութերի մշակման տեսակետից: Սակայն իր գրքի ավարտը **Թովման** համարեցնում է Մով. Խոր. Պատմության երրորդ գրքի ավարտին, ինչը կրկին ապացուցում է, որ Մով. Խոր. 4-րդ գիրքը գոյություն չի ունեցել, քանի որ վերջինիս գործն է, որ **Թովմային** ծառայել է որպես իր առաջին գրքի հիմնական աղբյուրը:

Առաջին գրքում օգտագործված աղբյուրների ընդգրկումը ցույց է տալիս **Թովմայի** խորագիտակությունը, նրանցում պարունակված հնևայական նյութի

---

[50] Հերքումը տե՛ս Եղիշէ, Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին. թարգմ., ներածական հոդվածը, ծանոթագր. Ե. Տեր-Մինասյանի., Եր., 1946, էջ 11-13: Եղիշէ արհեպ. Դուրեան, Ուսումնասիրութիւնք եւ քննադատութիւնք, 4. Եղիշէ եւ Բարձումայ: Երուսաղէմ, 1934, էջ 37-49:

օգտագործման հմտությունը, նա մեծ խնամքով աղբյուրներից, հատկապես Մով. Խոր., քաղում է ամեն մի ակնարկ, ամեն մի նախադասություն, որը կարող է օգտակար լինել, եւ վերափոխում այն իրեն անհրաժեշտ ձեւով, համապատասխանեցնելով սեփական պատկերացումներին, թե ինչպիսին պետք է լինի իր հովանավորներ եւ, թերեւս, ազգակիցներ՝ Արծրունյաց իշխանների ծագումնաբանությունը:

Սակայն Թովման օգտվել է ոչ միայն գրավոր աղբյուրներից, այլ նաեւ մեզ չհասած Արծրունիների տոհմական ավանդույթներից: Դա մի տեսակ վերապրումներ եւ հիշողություններ են Արծրունյաց տոհմի իշխանների հեռավոր անցյալի, երբեմնի իրենց պատկանող տիրույթների, արմատների մասին, թե ինչ հանգամանքներում նրանք հայտնվել են Վասպուրականում, որոնք Թովման քաղել է կիսաառասպելական-կիսապատմական ավանդույթներից եւ զգալիորեն վերամշակել իր ստեղծագործական ձեւերին հատուկ եղանակով:

Հայկական պատմագրությունում մինչեւ 20-րդ դարը իշխում էր Մով. Խոր. տեսակետը Արծրունյաց տոհմի ասորեստանյան ծագման մասին[51]: Առաջինը այդ վարկածի ճշմարտությանը կասկածել են Հ. Մարկվարտը եւ Ն. Ադոնցը, որոնք ենթադրել են, թե Արծրունիները ծագում են Ծոփքի թագավորական հարստությունից[52]: Այդ տեսակետը ընդունել է նաեւ Գր. Ղափանցյանը, որ համարում է նրանց Ծոփքի Շահիդյան հարստության շառավիղներ: Միեւնույն ժամանակ նա չի բացառում նրանց տեղական ծագումը. «...ուրարտական Artsuniuini (կամ Artsuini) քաղաքի անունից[53]: Գր. Ղափանցյանի ենթադրությունը Արծրունյաց տոհմի ուրարտական ծագման մասին շատ համոզիչ ապացուցում է Ս. Բարխուդարյանը[54]: Վերլուծության ենթարկելով ուրարտական թագավորներից մեկի՝ Մենուայի սեպագիր արձանագրություններում հիշատակվող Artsuniuini ցեղի, տեղանքի ու քաղաքի անվանումը, որ վերաբերում է մ. թ. առաջ 9-րդ դ. վերջին, այսինքն՝ Սենեքերիմ թագավորի սպանությունից 120 տարի ավելի վաղ, նա հերքում է «ամեն մի հնարավորություն կապելու Արծրունիներին Սենեքերիմ թագավորի

51 «Յորոց զմինն յարեւմտից հարաւոյ աշխարհիս մերոյ, մերձ ի սահմանս նորին Ասորեստանի բնակեցուցանէ Սկայորդին մեր Հայ նախնին, այսինքն է զՍանասարն ... Իսկ Արդամոզանն յարեւելից հարաւոյ նորին կողմանն բնակեալ, ի սմանէ ասէ պատմագիրն լինել զԱրծրունիս եւ զԳնունիս» (Ա., 23):

52 Ն. Ադոնց, Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում: Եր., 1987, էջ 461:

53 Гр. Капанцян. Историко-лингвистические работы, т. II, Ер., 1975, с. 99-113.

54 С. Бархударян. Урартское происхождение нахарарского рода Арцруни "Исследования по истории народов Востока". Сборник в честь академика И. А. Орбели. М-Л., 1960, с. 29-37.

որդիների հետ»[55]: Ս. Բարխուդարյանի ենթադրությամբ, Artsuniuini քաղաքը պետք է գտնվեր Վանա լճի հարավային ծայրի մոտ, Սղգա գյուղից ոչ հեռու, որտեղ եւ հայտնաբերված են եղել այդ քաղաքը հիշատակող արձանագրերից մեկի բեկորները: Artsuniuini քաղաքի հետ Ս. Բարխուդարյանը նույնացնում է Սղգա գյուղի մոտ գտնվող լեռան գագաթին պահպանված երբեմնի հզոր բերդի մնացորդները, որտեղից, ինչպես նա ենթադրում է, եւ տեղափոխված են եղել արձանագրությունները պարունակող բեկորները: «Բացի վերոհիշյալ արձանագրություններից, - շարունակում է նա, - հայտնաբերված է եղել նաեւ մեկ այլ ստելայի մաս, որի արձանագրությունում հիշատակվում է ձիարշավ «Մենուան իր Արցիբինի ձիով ոստյուն է կատարել 22 կանգուն հեռավորությամբ»: Թովմա Արծրունին ունի այդ ձիարշավարանի հետեւյալ հետաքրքիր նկարագրությունը՝ նա «... դաշիկ արարեալ յայնկոյս քան զՎանտոսպ, ի տեղւոջն արձանաշար քարակարկառ գոգաձեւ միջոցի երկուց բլրակաց, որ հայի յերիվարաց արկման դաշտն, ի վերայ Լեզուոյ գեաւղջն» (III, 18): Նախքան առաջին համաշխարհային պատերազմը այնտեղ դեռեւս տեղի էին ունենում մրցումներ եւ ձիարշավներ, իսկ ձիարշավարանի տեղը կոչվում էր «Ավագաքար»[56]: Հոդվածագրի միակ պնդումը, որի հետ դժվար է համաձայնել, վերջինիս կշտամբանքն է Թովմայի հասցեին, որն իբր «...ոչինչ չի ավելացնում տոհմի ծագման վերաբերյալ Մով. Խոր. հաղորդած տեղեկությունների վրա եւ միայն երկու անգամ կրկնում է Խորենացու պատմածը Սենեքերիմի եւ նրա որդիների մասին»[57]: Իրականում Թովման օգտվել է մեզ չհասած տոհմական ավանդույթներից, ընդ որում, նրա պատմությունում նշմարվում են ավանդույթների երկու ցիկլ՝ ուրարտա-մեդական եւ ասորեստանյան: Առաջին ցիկլը Արծրունիներին կապում է մեդական թագավոր Աժդահակի, իսկ երկրորդը՝ Ադրամելիքի եւ Սանասարի միջոցով ասորեստանյան թագավոր Սենեքերիմի հետ: Այդ երկու ցիկլերը սեղմ ձեւով ներկայացված են Թովմայի պատմվածքում. թե ինչպես Արծրունիների երկրորդ անվանացանկը փակող Կյուրոս Արծրունին Արշակ Պարթեւի օրոք աչքի է ընկել իր քաջագործություններով եւ խոհեմությամբ եւ «խնդրէ զնա Վաղարշակ յԱրշակայ եւ առնու ածէ զնա ընդ իւր ի Հայս, եւ անուանէ զնա Արծրունի, առաջին լինելով նորա ի դաշտավայրին Արծուիք կոչելոյ, դարձեալ ըստ պատահման եւ տարբերութեան արծուոյն կերպարանօք...», «Երկրորդ վասն բնակութեան նախնեաց նորա Ադրամելեայ եւ Սանասարայ Արզն՝ կոչեցին Արզրունիք»: (Ա, 6): Այդ բացատրության կապակցությամբ Թովման նկատում

[55] Անդ, էջ 37:
[56] Անդ, էջ 37:
[57] Անդ, էջ 30:

է «այլ ինձ զառաջինն ախորժելի զհաւատարմութիւնն ի մէջ առնուլ»: Այսպիսով, Թովման համոզված է, որ ավելի ստույգ է այն առասպելը, որը կապում է Արծրունի անունը Արծուիկ դաշտավայրի անվան հետ: Ինչպես գրում է Գր. Ղափանցյանը, «Ուրարտական Artsuniuini - ից կամ Artsuini -ից անցումը հայկական Artsruni-ի լիովին հնարավոր է երկու «ո» -ի դիսիմիլյացիայի դեպքում»[58]:

Քննության առարկա առասպելի Արծուիկ դաշտավայրը թվում է, հնարավոր է նույնացնել վերոհիշյալ այն դաշտավայրի հետ, որտեղ անց էին կացվում ձիարշավները եւ որը, Ս. Բարխուդարյանի կարծիքով, տեղայնացվում է Artsuniuini քաղաքի մոտ: Եթե Արծրունի անունը ըստ առաջին բացատրության ծագում է ուրարտական Artsuini ցեղի, տեղանքի, վայրի անունից, ապա առասպելի երկրորդ մասը հետաքրքիր է նրանով, որ մատնանշում է Արծրունի տոհմական անվան սերումը «Արգն» անվանումից, ինչը տանում է դեպի Արծրունիների ծոփենական (ըստ էության՝ ասորեստանյան) արմատները: Թովմայի պատմվածքները Քսերքսեսի եւ Արշեզի, երկու մեդական արքայազների, Քսերքսեսի հետնորդ Կյուրոս Արծրունու, Աժդահակ մեդական թագավորից սերող Ջիմար ամրոցի տիրուհի Զայլամայրի մասին կարելի է վերագրել տոհմական ավանդույթների ուրարտա-մեդական ցիկլին: Ծոփենական ցիկլին, որը, ըստ էության, կապում է Արծրունիների ծագումը Սենեքերիմ թագավորի հետ, վերաբերում են պատմվածքներ Ասուդի, Զաչուրի, Խուրանի եւ վերջինիս որդու, Թոռան, եղբոր, եղբորորդու մասին:

Սկսելով Արծրունյաց տոհմի բուն ծագումնաբանական պատմությունը Տիգրան թագավորի ժամանակներից, Թովման ներկայացնում է այդ գլխում պերսոնաժների զուգահեռ երկու զույգ՝ մեդականը՝ հանձինս Քսերքսեսի եւ Արշեզի եւ ասորեստանյանը՝ հանձինս Ադրամելիքի եւ Սանասարի, որոնք կարծես խորհրդանշում են Արծրունյաց տոհմի երկու ճյուղերը՝ իգականը եւ արականը: Արդ երկու ճյուղերը միանում են այն ավանդույթում, որը Թովման պատմում է 8-րդ «Թագաւորելն Արտաշէսի ի վերայ Հայոց» գլխում: Խուրանի թոռ Սահակի «... ձեռն հաւատաց Արտաշէս զգաւառն Աղբակ[59], զի յայն վայր ոմանք ի զարմից Աշդահակայ Մարի բնակէին անդ[60], արք քաջք, կորովազէնք

[58] Гр. Капанцян. Историко-лингвистические работы, т. II, с. 100.

[59] Ս. Բարխուդարյանը Աղբակ անվանումը կապում է ասորեստանյան սեպագրերում հիշատակվող Arbaku տեղանքի եւ Arbak'ku երկրի անունների հետ, որոնք տեղայնացվում են Մ. Զաբ գետի վերին հոսանքում, որտեղ եւ գտնվում էին Մ եւ Փ Աղբակ գաւառները (տե՛ս նշվ. աշխ., էջ 37):

[60] Ուրարտական սեպագրերի ժամանակաշրջանում եւ ավելի ուշ՝ Արարատից դեպի հարավ մինչեւ Նախճավան, Ուրմիա լճի առափնյա շրջաններում եւ հետագա Մոկքի եւ

*եւ դիպաղեղունք, բայց նուազեալ ազգին՝ ոչ ոք ունէին, որ կարող լինէին զգործ պատերազմին վճարել եւ զպաշտօն թագաւորին... Բայց կին ումն յազգէն Աշդահակայ բնակէ յամուրսն Ջիմար եւ ի Սրինգ, ի գաւառին ի Փոքր Աղբակ, եւ յանուն կնոջն Ջայլմար ... Նորա դուստր մի Անուշ անուն, առնու զնա Սահակ կնութեան հրամանաւ Արտաշէսի, եւ կնքեալ աշխարհն հաստատէ Սահակայ ի սեպհական ժառանգութիւն...»*[61]:

*Հետեւապես, ըստ տոհմական ավանդույթների, Արծրունիները արական գծով սերում են ասորեստանյան թագավոր Սենեքերիմից, իսկ իգականով՝ մեդական թագավոր Աժդահակից: Իրականում կատարվել է տեղային իշխանական տոհմի, որի ակունքները սկիզբ են առնում ուրարտական ժամանակաշրջանից եւ Ծոփքի Շահիդյան հարստությունից ծագող իշխանական տոհմի միաձուլումը*[62]:

*Մեծ հավանականությամբ կարելի է ենթադրել, որ Արծրունի իշխանների տոհմական ավանդույթների ողջ հարստությունից Թովմայի երկում իր արտացոլումն է գտել միայն փոքր մասը, որն ինքը այնպես է վերամշակել, որպեսզի այն համապատասխանի Արծրունի իշխանների՝ Սենեքերիմ թագավորից ծագելու Մովսես Խորենացու վերսիային:*

*Յուրովի օգտագործելով բազմաթիվ պատմական, ապոկրիֆիկ եւ առասպելական աղբյուրների տվյալները՝ Թովման գրում է Արծրունի իշխանների ծագումնաբանության գիրքը, որտեղ ապացուցում է, որ Արծրունյաց տոհմը ունի երկու կարեւորագույն հատկանիշներ՝ ազնվատոհմություն՝ շնորհիվ ասորեստանյան թագավոր Սենեքերիմից եւ մեդական թագավոր Աժդահակից ծագելուն եւ վաստակ՝ զինվորական ու պալատական (արծվակիրներ) ծառայությունում: Այսպիսով, նա հաղորդել է Արծրունյաց տոհմին շուք,*

---

Կորճայքի տարածքներում, բնակվում էին մարերի (մեդացիների) ցեղերը (տե՛ս՝ Гр. Капанцян, նշվ. աշխ., էջ 78, Ն. Ադոնց, նշվ. աշխ., էջ 463-466):

61 Ուշագրավ է, որ մանրամասն խոսելով մեդական արքայազներ Քաջքաջի ու Արշեզի մասին, Թովման ոչ մի անգամ ուղղակի չի ասում, որ նրանք Արծրունիների նախնիներն են, թողնելով ընթերցողին ինքնուրույն կռահել այն: Բացատրությունը, թերեւս, պետք է տեսնել Թովմայի ասածում. «... ոչ էր օրէն քաջաւորացն եւ օրինադրացն զկանանց ազգի բիւ ազգաբանութեան շարել, բայց միայն ըստ ժամանակագրության կանոնի, որպէս ... զՓրկիչն մեր Տեառն Յիսուսի Քրիստոսի զըստ մարմնոյ ազգաբանութիւնն գրելով աւետարանիչն Մատթէոս՝ եւ բուէ մի ըստ միոջէ, սկսեալ Աբրահամէ եւ գայ անցանէ մինչ ի Յովսէփ եւ լռէ վասն Մարիամայ զազգաբանելն ... Նոյն գունակ եւ զՂուկա...» (Ա, 1):

62 Ն. Ադոնցը խոսելով նախարարությունների տոհմական հիմքերի մասին, անդրադառնալով Արծրունի իշխանների հարցին, նշում է, որ «Ծոփաց իշխանական տան մի ճյուղի տեղափոխությունը Աղբակ, տեղի է ունեցել ոչ թե Տիգրանի ժամանակ, ինչպես կարծում է գիտնականը (Հ. Մարկվարտը), այլ ավելի ճիշտ Արշակունիների օրոք: Արծրունի բառի ստուգաբանությունը դեռ ճշտված չէ»: (Նշվ. աշխ., էջ 461, ծն. 1):

նշանակայնություն, ազնվազարմություն և դրա հետ կապված գերադասություն՝ Հայաստանի քաղաքական, սոցիալական և տնտեսական կյանքում առաջատար դերը խաղալու հավակնությունում: Հենց այդպիսի ծագումնաբանություն էր անհրաժեշտ Արծրունի իշխաններին, որոնք 9-րդ դարի վերջին քառորդում պատմական ասպարեզում հանդես գալով որպես Բագրատունյաց տոհմի ախոյաններ, կարիք ունեին ապացուցելու իրենց իրավունքները տոհմի հնությամբ և ազնվազարմությամբ: Թովման պատվով է կատարել իր առջև դրված խնդիրներից առաջինը՝ ստեղծել Արծրունյաց նախարարական տոհմի ծագման առասպելա-քաղաքական կոնցեպցիան, ընդ որում, եթե նա երբեմն դիմում էր «սեփական ֆանտաստիկ հավելումներին»[63], ապա դրանում նա միայնակ չէր. «Նման հնարանքները խորթ չէին նաև հեռավոր անցյալի պատմիչներին, իսկ հին քրիստոնյա գրողների միջավայրում հանդիսանում էին համընդհանուր երևույթ»[64]: Ուսումնասիրողի խնդիրն է նման պարագայում հետազոտել, թե ինչպես, տվյալ դեպքում Թովմայի մոտ, «...միահյուսվում են տարատեսակ տարրերը, ինչ չափով են ներկայացված ... նրա երեք հիմնական աղբյուրները, այսինքն՝ ժողովրդական ավանդույթները, գրավոր աղբյուրները և նրա սեփական ստեղծագործությունը, որպես իրեն ժամանակակից ձև»[65]: Քննելով Թովմայի երկի առաջին գիրքը, պետք հիշել, որ իր առաջին գիրքը ոչ թե հայոց հնագույն շրջանի պատմությունն է, այլ պատմվածք Արծրունիների ծագումնաբանության մասին: Այստեղից բխում է նրա ազատ վարվելակերպը փաստերի նկատմամբ, և երբ նա հիշատակում է որևէ աղբյուր, ապա ամենևին էլ չի հետապնդում ինչ-որ բիբլիոգրաֆիկ նպատակներ: Աղբյուրների վկայակոչումները լոկ պատմվածքի գրական

[63] Гр. Халатянц. Армянский эпос в "Истории Армении Моисея Хоренского", Москва, 1896, с. 151.

[64] Н. Марр. Арабское извлечение из сирийской хроники Марибаса. СПБ., 1902, с. 87-87. Նույն երևույթը նկատում է նաև Հ. Տաշյանը, որը անդրադառնալով այն հարցին, թե ինչ մեծ ազդեցություն է ունեցել ասորական, հատկապես, ապոկրիֆիկ գրականությունը հայկական միջնադարյան մատենագրության և ընդհանրապես քրիստոնեական գրականության վրա, նշում է, որ հենց այդ պատճառով ինչպես ասորական, այնպես էլ հայկական պատմություններում զգալի չափով տեղ են գտել շատ թե քիչ հնարված պատմվածքներ (տե՛ս՝ «Վարդապետութիւն առաքելոց անվավերական կանոնաց մատեան»-ը Վիեննա, 1896, էջ 2-3): Նման կեղծիքների օրինակ է բերում նաև Դ. Լիխաչովը. «Ահա, օրինակ, սիբիրյան տարեգրություններից մեկում գերագնահատվում է առևտրականներ Ստրոգանովների դերը 16-րդ դ. Սիբիրի յուրացման գործում: Կեղծի՞ք: Եթե ուզում եք՝ կեղծիք է, սակայն մի կեղծիք, որը բնորոշ էր այն ժամանակի համար, երբ Ստրոգանովները 17-րդ դ. Երմակի արշավանքում հատուկ դեր խաղալու հավակնություն ունեին» («Поэтика древнерусской литературы» Л. 1979):

[65] Н. Марр, նույն տեղում:

*տարրերն են, որոնք կոչված են փոխարինելու հեղինակին պատմողի դերում. Նա հիշատակում է այս կամ այն հեղինակի անունը պատմածը գեղարվեստորեն ձևավորելու, աշխուժացնելու և նրան ճշմարտացիության պատրանք հաղորդելու նպատակով:*

*Թովմայի օգտագործած պատմական նյութը, լինի դա գրավոր աղբյուր կամ էլ առասպելներ ու ավանդույթներ, իրականում շատ ավելի բազմազան ու լայնածավալ է, քան այն, ինչ երևում է մակերեսում: Թովման ազատորեն օգտվում է ձեռքի տակ եղած փաստերից, սակայն, երբ փաստերը չեն համապատասխանում իր նպատակներին, նա հղումների և հիշատակումների անորոշության շնորհիվ ազատորեն փոփոխում է դրանք կամ էլ հնարում նորերը: Այդպիսին է Թովմայի պատմողական ձևը իր Պատմության առաջին գրքում: Ժամանակակիցների համար նրա հնարանքները և փոխառությունները նույնքան ակնհայտ էին, որքան էլ ինքնըստինքյան հասկանալի: Թվում է, որ Հովհաննես Դրասխանակերտցին խոսելով հնէտրական ոճի մասին, նկատի ուներ շարադրելու հենց նման ձևը:*

*Ստ. Մալխասյանցը Թովմայի հիշատակած 4-րդ գրքի կապակցությամբ, նշում է, որ «...Արծրունին հայտնի է իբրև անհավաստի տեղեկություններ հաղորդող հեղինակ»[66]: Ի պաշտպանություն Թովմայի՝ կարելի է ասել, որ ոչ ոք չի պահանջի պատմական վեպեր գրող ժամանակակից հեղինակից պատմական փաստացի ճշգրտություն կամ էլ մատենագրական տվյալներ: Թովման իր առաջաբանում պարզ գրում է, որ իր առաջին գիրքը Արծրունիների ծագումնաբանությունն է: Գոյություն ունեցող ծագումնաբանություններից ո՞ր մեկն է ճշմարտացի:*

*Եթե Թովմա Արծրունու Պատմության առաջին գիրքը չի ծառայում որպես ստույգ պատմական փաստերի աղբյուր, ապա պատմա-մշակութային և քաղաքական զարգացումների տեսանկյունից այն բացառիկ երևույթ է միջնադարյան հայկական մատենագրությունում:*

*Ի տարբերություն առաջին գրքի, երկրորդ (բացառությամբ առաջին երկու գլուխների) և երրորդ գրքերում աղբյուրների ուղղակի վկայակոչումները բացակայում են: Թովման բավարարվում է անորոշ հիշատակումներով, ինչպես, օրինակ՝ «Եւ զբոյցք ժամանակաց սոցա յայլոց գրեալ յառաջագոյն, աւելորդ համարեցաք երկրորդել» (Բ, 4): Բարեբախտաբար, պահպանվել են երկրորդ գրքի աղբյուրները:*

*Վերը արդեն նշվել է, որ 2-րդ գրքի սկզբնական երկու գլուխներն իրենց բովանդակության և աղբյուրների մշակման տեսակետից հանդիսանում են*

[66] Տե՛ս՝ Մովսես Խորենացի, Հայոց պատմություն, Եր., 1940, էջ 18:

*առաջին գրքի օրինաչափ շարունակությունը: Հետեւաբար, բուն երկրորդ գիրքը կազմում են հաջորդ հինգ գլուխները: Երրորդ գլուխը ամբողջությամբ գրված է ըստ Սեբեոսի, որի ստեղծագործությունից **Թովման** քաղում է ոչ միայն առանձին արտահայտություններ եւ հատվածներ, այլ արտագրում է ամբողջ էջեր: Երբեմն նա ավելացնում է այնպիսի մանրամասներ, որոնք մեզ հասած Սեբեոսի բնագրում բացակայում են*[67]*:*

*Հաջորդ՝ 4-րդ գլխում, **Թովման** հենվում է ինչպես Սեբեոսի, այնպես էլ Ղեւոնդի ստեղծագործությունների վրա: Գլխի սկզբնական մասում, մինչեւ Մոհամմադի երեւան գալը, **Թովմայի** հիմնական աղբյուրն է մնում Սեբեոսը: Մոհամմադի կենսագրությունը, որը բացակայում է ինչպես Սեբեոսի, այնպես էլ Ղեւոնդի մոտ*[68]*, **Թովման** շարադրում է բավականաչափ ընդարձակ, հենվելով ըստ երեւույթին բազմաթիվ ձեռագրերում պահպանված Մոհամմադի մասին ավանդույթի տարատեսակներից մեկի վրա*[69]*: Դրան հաջորդող մասի տեղեկությունները քաղված են Ղեւոնդից եւ Սեբեոսից. վերջինս դադարում է **Թովմայի** աղբյուր լինելուց, հետեւյալ հատվածից հետո. «... զՅազկերտ սպանին, որ կալաւ զթագաւորութիւնն ամս. Ի, եւ բարձաւ տէրութիւնն Պարսից եւ ազգին Սասանեաց, որ կալան զթագաւորութիւնն ամս ՇԽԲ»*[70]*: Սույն գլխի վերջին հատվածում **Թովման** ներկայացնում է Ղեւոնդի Պատմության հիման վրա կազմված արաբական խալիֆների ցանկը, սկսած Մուավիայից եւ վերջացած Ահարոնով (Հարուն ալ-Ռաշիդ): Ցանկը իրենից ներկայացնում է խալիֆների անունների հասարակ թվարկումը, որը երբեմն ընդհատվում է շատ թե քիչ ընդարձակ, ծանոթագրությունների բնույթ կրող այս կամ այն խալիֆի անձը եւ գործունեությունը բնութագրող տեղեկություններով, ամբողջությամբ քաղած Ղեւոնդի երկից: Ղեւոնդի Պատմությունը վերջանում է կաթողիկոս Ստեփանոս Դվինեցու (788-790) եւ Հարուն ալ-Ռաշիդի (788-809) հիշատակումով, ուրեմն հաջորդ չորս խալիֆների անունները քաղած են ինչ-որ մի*

[67] Նման փոխառությունների մանրամասն վերլուծությունը տե՛ս՝ «Պատմութիւն Սեբէոսի»: Աշխատասիրությամբ Գ. Վ. Աբգարյանի, Եր., 1979:

[68] Ղեւոնդի երկի վերնագիրը՝ «Պատմաբանութիւն Ղեւոնդեա մեծի վարդապետի հայոց, որ յաղագս երեւելոյն Մահմետի, եւ զկնի նորին: Թէ որպէս եւ կամ որով օրինակաւ տիրեցին տիեզերաց եւ առաւել քէ հայոց ազգիս» (Մատ. ձեռ. թ. 1902) խոստանում է ներկայացնել Մոհամմադի պատմությունը, որը, սակայն, բնագրում բացակայում է: Սույն հանգամանքը մատնանշելով, Ք. Պատկանյանը իր Ղեւոնդի Պատմության ռուսերեն թարգմանությունում (տե՛ս՝ էջ 188, ծն. 1) ենթադրում է, որ թերեւս Մոհամմադի պատմությունը պարունակող Ղեւոնդի գրքի առաջին գլուխը մեզ չի հասել:

[69] «Պատմութիւն ծննդեան եւ սննդեան արքանեկին նեռան Մահմատին եւ բազաւորելն» (Մատ., ձեռ. թ. 6961). տե՛ս նաեւ՝ ձեռ. թթ. 234, 2506, 3206, 3447, 8100, 8387:

[70] «Պատմութիւն Սեբէոսի», էջ 164:

այլ աղբյուրից: Սակայն հնարավոր է, որ արաբական խալիֆների ողջ ցուցակը քաղած է այդ այլ աղբյուրից: Այդ դեպքում տրամաբանորեն արդարացված կլինի 4-րդ գլխի ավարտող պարբերությունը՝ «Բայց մեզ կայ առաջի անել վասն Ջափրա եւ չար գործոց նորա, անգիրս մնացեալ յայլոց...»: Ոչ թե Թովման, այլ իր նոր աղբյուրի հեղինակն է խոստանում նկարագրել «անգիրս մնացեալ յայլոց» իրադարձությունները: Մի հանգամանք եւս մտածել է տալիս, որ Թովման այդ տողերի հեղինակը չէ:

Սովորաբար Թովման պահպանում է իր աղբյուրների ժամանակագրական համակարգը: Առաջին գրքում այն հիմնված է Եվս. Կես. եւ Մով. Խոր. վրա, այսինքն՝ հնագույն ժամանակի համար ցանկը կազմվում է ոչ թե ըստ տարիների, այլ աստվածաշնչյան հայրապետների եւ տիրակալների սերունդների, հետագա շարադրանքի ընթացքում շատ թե քիչ սինխրոնիկ արշակյան-սասանյան ներկայացուցիչների, հռոմեական կայսրերի եւ ավելի մանրամասն հայոց թագավորների եւ կաթողիկոսների շարքերով: Երկրորդ գրքի 3-4-րդ գլուխներում պահպանվում է իր աղբյուրներ Սեբեոսի եւ Ղեւոնդի ժամանակագրությունը, որը տարվում է ըստ այս կամ այն տիրակալի տարիների (օր.՝ «եւ եղեւ յամի չորեքտասաներորդի Խոսրովա արքայի», «ի քաններորդ ամի Մուրկա թագաւորութեան» եւ այլն):

Երրորդ գրքում, որտեղ Թովմայի շարադրանքը հիմնականում պետք է, որ լիներ ինքնուրույն եւ աղբյուրներից անկախ, նա սովորաբար բոլոր իրադարձությունները թվագրում է ըստ հայկական տոմարի: Այս տրամաբանորեն արդարացված ժամանակագրական համակարգից դուրս են մնում երկրորդ գրքի 5-6 գլուխները եւ երրորդ գրքի 14-րդ գլուխը, որտեղ Թովման օգտագործում է հունա-հռոմեական թվագրությունը: Այսպես՝ հինգերորդ գլուխը վերնագրված է՝ «Վասն թագաւորին Ջափրայ, զոր ինչ խորհեցաւ ի վերայ աշխարհիս հայոց եւ ի գլուխ եհան զկամս չարութեան եւ որ ինչ ընդ սովաւ նախքան զլնուլ վեցերորդ յոբելեան, եւ եօթնասուներորդ ոլոմպիադին, յետ իննեւտասն ընդիկտիոնին, յորում բովանդակին ժամանակք բռնակալութեան տաճկաց ամք ՄԻԲ ըստ թուոց հայերէն տումարի. թագաւորէ տաճկաց Թոքլ ումն Ջափր անուն»: Հաջորդ՝ 6-րդ գլխում, մենք կրկին հանդիպում ենք հունա-հռոմեական թվագրությանը՝ «Արդ ի գալ միւսոյ ամին, որ յոբելեանք Զ եւ ոլընպիատք ՀԲ, ընդիքտիոնք Ի, որ է ըստ հայերէն թուաբանութեան ամք Յ...»: Եվ, վերջապես, նույն թվագրությունը օգտագործված է երրորդ գրքի 14-րդ գլխի սկզբում. «Եւ եղեւ ի լնուլ վեցերորդ ամի գերութեան հայոց որ է ՅԶ, եւ ոլիմպիադք եւ ընդիկտիոնք...»:

Ակնհայտ է, որ այս գլուխները շարադրելիս, Թովման օգտվել է ինչ-որ

մի՝ մեզ անհայտ աղբյուրից[71]: Ավելին, կարելի է պնդել, որ այս անհայտ աղբյուրը հիմք է ծառայել երկրորդ գրքի 5-րդ գլխի եւ երրորդ գրքի 14-րդ գլխի միջեւ ընկած ողջ ծավալուն հատվածի համար, որը բովանդակում է 851-858 թթ. տեղի ունեցած իրադարձությունների պատմությունը:

Ընթերցողի համբերությունը չարաշահելով՝ պետք է մեջ բերենք նաեւ մի տեղեկություն Հովհաննես Դրասխանակերտցու Պատմությունից: «... Վասն զի համճեցաւ բանս ոչ երկրորդել միւս անգամ զհետեւանս ցրուցաց Շապհոյ Բագրատունւոյ եւ մերումս ժամանակի պատմագիր, որ յայտապատում խսկ արաբեալ է զրոյցս պայազատութեան որդւոյ Աշոտոյ սպարապետին Սմբատայ գիշխանական պատմութիւն, եւ զթագաւորացն զհանգամանացն զկարգս, եւ կամ զդարձ գերելոցն ի Բուխայէ զՀայաստանեայցս իշխանաց եւ նախարարաց յիւրաքանչիւր սեպհական իշխանութիւնս առեալ կացեալ հաստատեալ, եւ թէ ոյք ի նոցանէ հոյակապք եւ հարուստք եւ ուժեղակք ընդդէմ հակառակորդաց հինից գտան եւ կամ ոյք յումեքէ եղեն հարստահարեալք եւ կամ վախճան նոցա յիւրաքանչիւրումս տեղ»[72]: Սույն հատվածում Հովհ. Դրասխ. համառոտակի ներկայացնում է Շապուհի Պատմության այն մասը, որը բովանդակում է՝ 1. Թագավորաց կարգը (Թվում է, որ այդ «Թագաւորաց կարգը» վերաբերում է նաեւ արաբական տիրակալների հաջորդականությանը, որը եւ ներկայացնում է մեզ Թովման իր երկրորդ գրքի 4-րդ գլխի վերջին հատվածում, ճիշտ այնտեղ, որտեղ ավարտվում է Ղեւոնդի Պատմությունը: Այստեղից է, որ նրա տեղեկությունների միակ աղբյուրն է դառնում Շապուհ Բագրատունին), 2. Աշոտ Մսակերի որդի Սմբատ սպարապետի իշխանական պատմությունը, 3. Գերեվարված հայոց իշխանների դարձը Հայաստան եւ նրանց հետագա ճակատագրի հանգամանքները: Հովհ. Դրասխ. սույն համառոտությունը լիովին համապատասխանում է Թովմայի Պատմության երկրորդ գրքի 5-րդ գլխի - 3 գրքի 14-րդ գլխի, ինչպես նաեւ մի շարք հաջորդ գլուխների բովանդակությանը: Այնպես, ինչպես, առանց անունները տալու, Թովման կազմել էր իր կոմպիլյատիվ երկրորդ գրքի 3-4 գլուխները, երբեմն արտագրելով ամբողջ էջեր, ճիշտ նույն ձեւով, պետք է ենթադրել, նա օգտագործել է նաեւ Շապուհի գործը:

Թովման անկասկած տվյալ իրադարձությունների ժամանակակիցն էր եւ թերեւս դրանց մի մասի ականատեսը. սակայն այդպիսի մանրամասն եւ

---

71 Որ այդ աղբյուրը պետք է լինի Շապուհ Բագրատունու Պատմությունը կարծիք են հայտնել Ն. Ադոնցը, Հ. Մարկվարտը, Հ. Օրբելին: Ն. Ակինյանը իր համապատասխան հոդվածում (տե՛ս՝ Մատենագրական հետազոտություններ, Քննություն եւ բնագիր. հ. Ա., Վիեննա, 1922, էջ 195) նշում է՝ «Մինչեւ 788 շրջանի համար անշուշտ Ղեւոնդ ամենէն աւելի չեչտուած պիտի ըլլայ, իսկ յաջորդ շրջանի պատմութիւն է Շապուհ»:

72 Յովհաննէս Դրասխանակերտցւոյ Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 131:

*գործող անձանց ու դեպքերի աշխարհագրական տեսակետից լայն ընդգրկում ունեցող գիրք գրելու համար բավական չէ լինել ժամանակակից եւ ականատես, նման գործ կարող է գրել համապատասխան կրթություն ստացած եւ հասուն անձնավորությունը: Արդ, ի՞նչ տարիք կարող էր ունենան 850 թ. **Թովմա Արծրունին**: **Թովմայի** Պատմության վերջին, անավարտ մնացած 29-րդ գլխում դեպքերի նկարագրությունը հասցվում է մինչեւ 908 թ., Գագիկ Արծրունին հիշատակվում է միայն որպես Վասպուրականի իշխան, իսկ Յուսուֆ Սաջիդի մասին խոսք անգամ չկա: Կարող է այն տպավորությունը ստեղծվել, թե **Թովմա** Արծրունին մահացել է նախքան 908 թ.: Սակայն նույն այդ 29-րդ գլխում **Թովման** գրում է՝ «... իսկ զՆախճավան քաղաք եւ զԳողթն գաւառ հանեալ էր ի Վասպուրականէ բազում ժամանակօք առաջ, ՄԺԱ ամօք, յամի այրման եկեղեցւոյն Գրիգորի...»: Քանի որ հայոց նախարարների այրումը Նախճավանի եւ Խրամի եկեղեցիներում տեղի է ունեցել 705 թ., հետեւաբար այդ տողերը **Թովման** գրում է 915/916 թ. (705+211), ինչը հաստատվում է նույն գլխում փոքր-ինչ անց՝ Վարագա խաչի հայտնության մասին պատմվածքի հետեւյալ տողերով. «Այս այն խաչ է զոր վերագոյնն գրեցաք վասն սորա, ՄՇԹ ամօք յառաջ զօրայս բացայայտեալ գրոյցս յայտնութեանն, յամս Ներսեսի Երրորդի Հայոց կաթողիկոսի եւ Վարդանայ Ռշտունեաց պատրկի եւ յամի ունելութեանն տաճկաց զհայկական աշխարհս»: Հայոց կաթողիկոս Ներսես Գ հայրապետության տարիներն են 641-661 թթ., Վարդ Պատրիկը հայոց սպարապետի պաշտոնն է ստանձնել 658 թ., իր հոր՝ Թեոդորոս Ռշտունու մահից հետո. դա այն ժամանակաշրջանն էր, երբ արաբները խախտելով 652 թ. պայմանագիրը, ներխուժել են Հայաստան եւ 658 թ. մոտ հիմնականում գրավել այն: Հետեւաբար **Թովման** այդ տողերը գրել է 652-658 թթ., 250 տարի անց, այսինքն՝ 911-917 թթ.: Սակայն շատ հնարավոր է, որ իր տեղեկությունը Վարագա խաչի հայտնության մասին **Թովման** քաղել է մի շարք ձեռագրերում պահպանված «Պատմութիւն զգջման Վարդ Պատրիկին» պատմվածքից՝[73] «Ի սորա (Վարդ Պատրիկի) աւուրս յայտնեցաւ սբ. խաչն ի Վարագայ եւ էր թուականն ՃԲ: Եւ բարեպաշտ Վարդ Պատրիկ գնաց յերկրպագութեան սբ. Նշանին Վարագայ»: Այդ դեպքում **Թովման** նկատի ուներ 653 թ. եւ, ուրեմն, սույն տողերը գրում էր 912 թ.: Զուգադրելով մեր ստացած տարեթվերը, կարող ենք ասել, որ վերջին՝ 29-րդ մեզ անավարտ հասած գլուխը **Թովման** գրում էր 10-րդ դարի երկրորդ տասնամյակի կեսերին, երբ նա հազիվ թե 75-80 տարեկանից անցած լիներ եւ,*

---

[73] Մատ. ձեռ. թ. 1487, էջ 7050, էջ 18բ, թ. 268ա, թ. 8100, էջ 244ա եւ մի շարք այլ ձեռագրերում:

ուրեմն, 851 թ., մոտ 10 տարեկան պատանի էր: Ամենայն հավանականությամբ, կարող ենք ենթադրել, որ **Թովմայի** ինքնուրույն, գրավոր աղբյուրներից անկախ շարադրանքը սկսվում է մոտավորապես այն պահից, երբ նա անցնում է 886/7 թվից հետո տեղի ունեցած իրադարձությունների նկարագրությանը: Առաջաբանում **Թովման** դիմում է «...Գրիգոր Արծրունեաց տէր եւ Վասպուրական իշխան»-ին որպես իր պատվիրատուի: Սակայն արդեն առաջին գրքի 6-րդ գլխում նա գրում է «Զոր եւ մեր ըստ հրամանի քում, Գագիկ զօրավար Հայոց եւ Վասպուրական իշխան, ջան յանձին տարեալ ընդ համառօտութիւն գրուցատրութեանցն անցեալ...», ինչից կարելի է եզրակացնել, որ նա Գրիգոր-Դերենիկի օրոք հասցրել է գրել միայն առաջին հինգ գլուխները, որից հետո նրա աշխատանքը ընդհատվել է մեզ անհայտ պատճառներով: Համենայն դեպս նա, ըստ երեւույթին հենց այդ ժամանակաշրջանը նկատի ուներ, երբ 3-րդ գրքի 27-րդ գլխում պատմելով Ոշտունյաց ոստանում հրաշքի հայտնության մասին, գրում է «... որ ցուցաւ ի զօրավարութեանն Գագկայ, եւ ապաշավանք ոչ սակաւք դիմեցին հոլովեալ ի վերայ իմ», այսինքն՝ այն տարիները, երբ Գագիկը դեռեւս միայն սպարապետ էր, իսկ Վասպուրականի իշխանն էր Սարգիս-Աշոտը: Դա նշանակում է, որ իր առաջին գրքի 5-րդ գլխից հետո գրված ողջ աշխատության շարադրանքը կատարվել է Աշոտի մահվանից՝ 906/7 թ. հետո, երբ իշխանությունը ժառանգած Գագիկը առաջարկել է նրան շարունակել գրքի շարադրանքը, որը եւ տեւել է մոտ 10-12 տարի, եւ թվում է, ընդհատվել է նրա մահվան պատճառով 920 թ. ոչ ուշ:

Ի՞նչ չափով եւ ի՞նչ ձեւով է օգտագործել **Թովման** Շապուհի Պատմությունը: Հարցին պատասխանելիս պետք է նշենք, որ, ի տարբերություն առաջին գրքի, երկրորդ գրքում (սկսած 3-րդ գլխից), **Թովման**՝ 1. ոչ մի անգամ չի հիշատակում հանվանե իր աղբյուրները[74], 2. քաղում է դրանցից ոչ միայն առանձին պարբերություններ, այլ նաեւ ամբողջ էջեր. իր սեփական միջամտությունն աննշան է: Թվում է, որ սխալված չենք լինի, եթե ենթադրենք, որ նույն չափով եւ նույն ձեւով նա օգտվել է նաեւ Շապուհի գործից[75]: Իհարկե

---

[74] Այդ կապակցությամբ Հ. Ներսես վ. Ակինյանը գրում է «Զարմանալի է, որ Թովմա Արծրունի չի յիշէր զինքը յանուանէ, որ այնպէս մեծաւոր էր Շապհոյ: Այս լռութիւնը սակայն չի կրնար նկատուիլ հետեւցնելու, թէ անծանօթ մնացած է իրեն Շապհոյ Պատմութիւնը: Ինծի կերեւայ թէ Թովման կարդացած է Շապհոյ պատմական երկասիրութիւնը» («Մատենագրական ուսումնասիրութիւններ. Քննութիւն եւ բնագիր. Հ. Ա. Վիեննա, 1922, էջ 198):

[75] Այդ կապակցությամբ Հ. Օրբելին գրում է «Թովմա Արծրունու անվամբ մեզ հայտնի գործում կան բազմաթիվ ծավալուն միջբերումներ, որոնք պատկանում են այլ... պատմիչ՝ Շապուհ Բագրատունու գրչին...» (Избранные труды», т. II, Ереван, 2002, с. 434):

հնարավոր չէ տող առ տող նշել **Թովմայի** փոխառությունները Շապուհի Պատմությունից, սակայն մոտավոր չափով դա հնարավոր է անել: Օրինակ՝ երկրորդ գրքի 5-րդ գլխի վերնագիրը՝ «Վասն թագաւորին Ջափրա...անուն» եւ առաջին պարբերությունը՝ Շապուհինն է, 2-րդ պարբերությունում «Ի սորա ժամանակս տիրէր Վասպուրական աշխարհիս Աշոտ ի տանէն Արծրունեաց, այր քաջայայտ եւ ճոխ...եւ հոյակապ եւ անուանի եղեւ քան որ յառաջագոյն քան զնա էին կացեալ իշխանք ընդհանուր Հայաստանեայցս, որ յարեւելս եւ ի կողմանս հիւսիսոյ...» զգացվում է **Թովմայի** առաջին գրքի համար բնորոշ միտում վերագրել Արծրունյաց իշխաններին հատուկ նշանակություն ունեցող դեր բոլոր կարեւոր իրադարձություններում, եւ այդ միտումը պահպանվում է մինչեւ վերջ: Թերեւս այդ ձեւով է նա հիմնականում միջամտում Շապուհի շարադրանքի մեջ, միաժամանակ անփոփոխ պահպանելով հիմնական պատմական նյութը: Նույն ձեւով կազմված են երկրորդ գրքի 6-7-րդ գլուխները, իսկ 7-րդ գլխի այն ծավալուն հատվածը, որտեղ նկարագրված է սասունցիների նիստուկացը, անկասկած, բառացի արտագրություն է Շապուհի Պատմությունից: Նույնը կարելի է ասել նաեւ 3-րդ գրքի 2-րդ գլխի մասին, որտեղ **Թովման** ներկայացնում է Մոկաց իշխան Սմբատ Բագրատունու պատմությունը: Ինչպես նշում է **Ն. Ադոնցը**, Գուրգեն Արծրունու (Աբուբելչի) արկածավոր կյանքը գրի է առել «... հաւանօրէն Շապուհ Բագրատունին, որից քաղում է **Թովմա** Արծրունին»[76]:

Այսպիսով, **Թովմայի** Պատմության 2-րդ գրքի վերջին երեք գլուխները եւ 3-րդ գրքի քսան գլուխները, որտեղ նկարագրված են 850-855/56 թթ. արաբական արշավանքները, հայոց իշխանների գերեվարությունը, նրանց դարձը Հայաստան եւ հետագա ճակատագիրը, բովանդակության տեսակետից լիովին համապատասխանում են Հովհ. Դրասխ. ներկայացրած շրջանակներում Շապուհի Պատմությանը[77]: Միայն 21-րդ գլխից սկսվում է **Թովմայի** Պատմության ինքնուրույն շարադրանքը[78]: Նախորդ, ըստ էության Շապուհի

[76] «Պատմական ուսումնասիրություններ. Բագրատունյաց փառքը, Փարիզ, 1948, էջ 74: Լիովին հիմնավոր է Ն. Ակինյանի կարծիքը, թե «Շապուհ՝ Պատմութիւն, որ է գիրք արքոյն Սմբատայ ստրատելատին եւ այլ նահատակացն թուին Հայոց ԳՃԲ» պատկանում է Շապուհի գրչին եւ ոչ թե առանձին գիրք է, այլ նրա Պատմության մասերից մեկն է (տե՛ս՝ նշվ. աշխ., էջ 189):

[77] Նկատելի է, որ ինչպես Յովհ. Դրասխ., այնպես էլ Թովմայի երկերում չեն արտացոլվել Աշոտ Մսակերի եւ նրա եղբոր՝ Շապուհի իշխանության տարիները: Այդ բացը իրենց Պատմություններում լրացնում են Ասողիկը եւ Վարդանը, որոնց աղբյուրը տվյալ դեպքում կարող էր լինել միայն Շապուհի Պատմությունը:

[78] Մենք ելնում ենք Ն. Ակինյանի շատ հավանական ենթադրությունից, որ «Շապուհ Աշոտ Մեծի ուղիղ ժամանակակից եւ ընկերակից կ՚իյնայ: Իր ծնունդը կրնանք դնել

գրչին պատկանող, մասի համեմատությամբ Թովմայի գրքի վերջին 22-29-րդ գլուխները զգալիորեն ավելի աղքատ են ներկայացված փաստական նյութի եւ դրա ընդգրկման աշխարհագրական շրջանակների տեսակետից. հիմնականում, շատ թե քիչ բացառություններով, այն սահմանափակվում է Վասպուրականի բուն տարածքով: Եթե, ելնելով Թովմայի վերոհիշյալ ցուցմունքներից, հիշենք, որ կան հիմքեր ենթադրելու, թե նրա ամբողջ աշխատությունը, բացառությամբ առաջին հինգ գլուխների, գրված է 906/907-916/918 տարիների ընթացքում, ապա ուրեմն, վերջին 22-29-րդ գլուխները նա գրել է ոչ թե անմիջականորեն հետեւելով կատարվող դեպքերին, այլ հիշողությամբ: Դրանով կարելի է բացատրել, օրինակ այն, որ Սարգիս-Աշոտի իշխանության օրոք տեղի ունեցած Ափշինի արշավանքները Հայաստանում ներկայացված են ընդհանուր ձեւով, որոշ անճշտություններով ու սխալներով, օրինակ, Ափշինի մահվան թվագրումը՝ 898-ը 901-ի փոխարեն: Ի տարբերություն Թովմայի, Հովհ. Դրասխ. տանում է իր պատմածը դեպքերի թեժ հետքերով, մանրամասն եւ աշխույժ, որպես դրանց անմիջական եւ եռանդուն մասնակիցը:

Արդ ո՞րն է Թովմա Արծրունու Պատմության երկրորդ եւ երրորդ գրքերի աղբյուրագիտական նշանակությունը: Անպայման այն, որ յուրովի օգտագործելով Շապուհ Բագրատունու Պատմությունը, երբեմն միջամտելով, խմբագրելով, կրճատելով, քաղելով անփոփոխ առանձին արտահայտություններ, փոքր կամ մեծ հատվածներ, երբեմն էլ արտագրելով ամբողջ էջեր, նա հետագայի համար պահպանել է Շապուհ Բագրատունու երկի թերեւս ամենաձավալուն եւ կարեւոր մասը՝ 9-րդ դ. Հայաստանում արաբական արշավանքների մանրամասն նկարագրությունը, դրանց հետ կապված հայոց նախարարական տների ճակատագիրը եւ Աշոտ Ա Բագրատունու իմաստուն, զգույշ քաղաքականության շնորհիվ հայոց անկախ պետականության հաստատումը:

Պետք է այստեղ նաեւ ըստ արժանվույն գնահատել Հովհաննես Դրասխանակերտցուն, որը, թերեւս, միակը հայ միջնադարյան պատմիչներից, համառոտ, բայց եւ շատ բովանդակալից ներկայացրել է իր ժամանակակից մեկ այլ պատմիչի աշխատությունը եւ իր դարաշրջանի պատկերացումների տեսանկյունից քննադատորեն արժեքավորել այն:

---

մեծամասամբ 830 շրջանին եւ վախճանը 885-էն ոչ շատ վերջը, հաւանօրէն 900-էն յառաջ, մեռած իբր 60-70-ամեայ (տե՛ս՝ նշվ. աշխ., էջ 171):